


# ԱՄԵՆԱԾԵՐ ԾԵՐՈՒՆԻՆ

*ՀՈՎՀԱՆՆԵՍ ԳՐԻԳՈՐՅԱՆ*

Մի ծեր մարդ է քայլում փողոցով,
և ձյունը կայծկլտում է հազարագույն
նրա ճերմակ ու երկար մորուքին:
Իսկ գիշերը իջնում է արդեն,
ուշ է, մթնել է, բայց, տեսե՛ք,
ոչ ոք դռները չի փակում:
Եվ բաց դռների միջով
անարգել անցնում է ծերունին—
և տները լցվում են ջերմությամբ,
և տները ողողվում են լույսով,
և մարդիկ իրար ձեռք են սեղմում,
համբուրվում և ժպտում են միմյանց:
Իսկ ծեր մարդը նորից փողոցում է
և քայլում է առույգ քայլերով,
և ձյունը չի ճռճռում նրա ոտքերի տակ,
երեխաները ձնագնդերով չեն խփում նրան,
և սև կատուները չեն փակում նրա ճանապարհը,
որովհետև նա շատ է ծեր և հավանաբար
աշխարհի ամենածեր ծերունին է
գավազանը ձեռքին,
և ձյունը կայծկլտում է հազարագույն
նրա ճերմակ ու երկար մորուքին...
Բայց ամենակարևորն այն է,
որ ծերունու ուսին մի մեծ պարկ կա
և այդ պարկը լիքն է
խաղալիքներով զանազան և այլ նվերներով
և այդ ամենը նա բաժանում է
մեծերին, փոքրերին և ամենափոքրերին
և ամենա-ամենափոքրերին.

*Նկ. ՀԵՆՐԻԿ ՄԻՐԱՎՅԱՆԻ*





*Անցած տարվա սեպտեմբերին շահագործման հանձնվեց Երևանի տիկնիկային թատրոնի նոր շենքը։ Այժմ մանուկ հանդիսատեսները ներկայացումներ դիտում են գեղեցիկ, ընդարձակ, ճաշակով ձևավորված դահլիճում։ Նոր տունը հավանաբար ուրախություն է պատճառում նաև տիկնիկներին, ներշնչում նրանց խաղալու ավելի ոգևորված։*

# ԱՅՍ ԶԱՐՄԱՆԱԼԻ, ԱՅՍ ՀՐԱՇԱԼԻ ՏԻԿՆԻԿՆԵՐԸ

ՌՈՒԲԵՆ ՄԱՐՈՒԽՅԱՆ

Աշխարհը լցված է տիկնիկներով։

Բայց ոչ ոք չգիտե, թե երբ և որտեղ է հայտնվել առաջին տիկնիկը։ Ո՞վ գիտե, գուցե նա ծնվել է մարդկության հետ միասին կամ գուցե նրանից դարեր հետո, ոչինչ հայտնի չէ, բայց որ նա հազարամյակների պատմություն ունի, դա անժխտելի է։ Ամեն տարի հնէաբանները բազմաթիվ կավե արձանիկներ են հայտնաբերում հնագույն բնակավայրերն ու քարանձավներն ուսումնասիրելիս։

Հին եգիպտական բուրգերն ուսումնասիրելիս գտել են մի նավակ, որի վրա ամրացված են ձեռքերն ու ոտքերը շարժող տիկնիկներ։ Մի բան պարզ է, որ դրանք խաղարկու տիկնիկներ են և իրենց մեջ արդեն պարունակում են տիկնիկային թատրոնի տարրեր։ Ոչ միայն համաչափ ու գեղեցիկ են այդ տիկնիկները, այլև նրանց միջոցով մենք իմանում ենք, թե ինչպիսի հագուստ են կրել հին եգիպտացիները, ինչպիսի սանրվածք են ունեցել, ինչպիսի կոշիկ են հագել։

Հին հունական աղբյուրները արդեն բավականին նյութ են պարունակում տիկնիկային թատրոնի մասին։ Հնագույն ժամանակներից մեզ է հասել այդ թատրոնի դերասաններից մեկի անունը։ Պոտեյնոս են կոչել նրան, նա դրամատուրգ Էվրիպիդեսի ժամանակակիցն էր և նույնքան հարգված ու սիրված էր թե՛ պատրիկների, թե՛ պլեբեյների կողմից։ Իսկ հույն հայտնի պատմաբան Քսենոֆոնը նկարագրում է մի խնջույք, որին ներկա է եղել փիլիսոփա Սոկրատեսը։ Այդ խնջույքի ժամանակ սիրակուզցի մի թափառաշրջիկ դերասան ցուցադրել է խոսող և շարժվող տիկնիկների զվարճալի մի խաղ, որը մեծ հաճույք ու զարմանք է պատճառել ներկաներին։

Ահա այսպես, հին աշխարհում, մեզանից դեռևս երեք հազար տարի առաջ, դրամատիկական թատրոնների կողքին, գոյություն է ունեցել նաև տիկնիկային թատրոնը, որը պատշաճ տեղ է ունե-

ցել այդ ժողովուրդների արվեստների պատմության մեջ:

Հետագա դարաշրջաններում տիկնիկային թատրոնը թևակոխում է մի նոր շրջան, որը սերտորեն առնչվում է քրիստոնեության ծագման ու զարգացման հետ: Միջնադարյան եկեղեցու՝ խավարամոլ ծառաները անտարբեր չէին կարող անցնել մարդկանց վրա ներազդելու այնպիսի հզոր միջոցի կողքով, ինչպիսին տիկնիկներն էին: Նրանք եկեղեցու բեմը հանեցին տիկնիկներին, որոնք կրոնական թեմաներով ներկայացումներ էին ցուցադրում: Եկեղեցում հավաքված ժողովրդի վրա մոգական ազդեցություն էին թողնում այնպիսի տեսարաններ, ինչպիսիք էին, օրինակ, Քրիստոսի չարչարանքի, խաչելության և համբարձման պատկերները: Տիկնիկ-Քրիստոսի աչքերից արցունքներ էին թափվում, երբ նրան մեխում էին խաչին, իսկ հետո, երգի, երաժշտության և լուսային էֆեկտների ուղեկցությամբ տառապյալ տիկնիկ-Քրիստոսը թռչում էր երկինք, լողում բարձրագմբեթ կաթոլիկական եկեղեցու կամարների տակ: Հասարակ ժողովուրդը վախով ու խորհրդավորությամբ ներշնչված, նայում էր այդ տիկնիկներին ու նրան թվում էր, թե ամեն ինչ իրական է ու ճշմարիտ: Բայց տիկնիկները հրաշքներ էին գործում նաև ժողովրդի ծոցից ելած միջնադարյան տիկնիկավար դերասանների ազնիվ ձեռքերում: Նրանք ստեղծեցին ժողովրդական տիկնիկ-հերոսների բազմաթիվ կերպարներ: Թափառում էին երկրից-երկիր, քաղաքից-քաղաք, մարդաշատ հրապարակներում ու տոնավաճառներում ցուցադրում զվարճալի ու իմաստուն, տխուր և ուրախ ներկայացումներ:

Իտալիայում, բացի Կոմեդիա դե լարտեից, դա Եվրոպայում գոյություն ունեցող ամենաժողովրդական թատրոնն էր, գործում էին նաև տիկնիկային ժողովրդական բազմաթիվ թատերախմբեր, որոնք սկզբունքորեն շատ բանով նման էին Կոմեդիա դե լարտեին: Այն հերոսները, որոնց մենք հանդիպում ենք Կոմեդիա դե լարտեում՝ Պուլչինելլա, Արլեկին, Պանտալոնե, հանդիպում ենք նաև տիկնիկային թատրոնում, սակայն ավելի ընդգծված բնավորության գծերով: Վաղուց, շա՜տ վաղուց արդեն գոյություն չունի Կոմեդիա դե լարտեն, բայց տիկնիկ Պուլչինելլան շարունակում է իր գոյությունը: Այսօր էլ կարելի է հանդիպել նրան՝ պոպոզավոր գլխարկով, սև դիմակով, արագաշարժ ու արագախոս այդ տիկնիկ հերոսին, որը բարձրաձայն ծիծաղում է աշխարհում տիրող չարության ու անարդարության վրա: Զվարճախոս ուրախ Պուլչինելլան կարող էր ծնվել միայն Իտալիայի երկնքի տակ, քանի որ նա իր բնավորության գծերով, կեցվածքով, կյանքի այս կամ այն երևույթի նկատմամբ արտահայտած վերաբերմունքով շատ նման է իր իսկ ծնած ժողովրդին:

Իտալիայում Պուլչինելլային սիրում են բոլորը, իշխանավորներից բացի: Ֆաշիստական Իտալիայում, Հիտլերի գործակից Մուսոլինին բանտարկել էր տըվել մի քանի տասնյակ տիկնիկավար-դերասանների, որոնք համարձակվել էին Պուլչինելլային կարմիր շապիկ հագցնել ու ծաղրել Մուսոլինիի բռնապետությունը:

Աշխարհի բոլոր ժողովուրդներն ունեն իրենց սիրելի տիկնիկ-հերոսը, որին օժտել են մարդկային լավագույն հատկություններով:

Ռուսական Պետրուշկայի կենսասիրությունն ու լավատեսությունը վարակում է հանդիսատեսներին, նրանց կյանքի տառապանքներին դիմադրելու հավատ ներշնչում: Պետրուշկան ապրում էր ժողովրդի մեջ և ինչպիսի ծանր վիճակի մեջ էլ ընկներ, կարողանում էր ճարպկորեն դուրս պրծնել ու քահ-քահ ծիծաղել: Բեմի վրա նա երբեք չէր մահանում. նա ժողովրդի անմահության խորհրդանիշն էր: Տիկնիկագործ վարպետը, որը շատ հաճախ նաև տիկնիկավար դերասանն էր, Պետրուշկային տալիս էր ժպտացող դեմք, երկար, սապատավոր քիթ, գլխին դնում էր ծիծաղելի գըլխարկ: Պետրուշկան հագնվում էր այնպես, ինչպես իր ժամանակի ռուս մուժիկը, և թափառում էր երկրով մեկ: Ցարական Ռուսաստանի մեծ քաղաքների հարուստ մարդկանց բակերի մուտքին հաճախ կարելի էր հանդիպել հետևյալ մակագրությանը. «Արջ պարեցնողներին, մուրացկաններին, շներին և Պետրուշկային այստեղ



Պանչ և Ջուդի



Կոչպարիկ

մուտքն արգելվում էր»։* Ընդհատ հալածանքներին ու հետապնդումներին, Պետրուշկան իր գոյությունը պահպանեց մինչև մեր օրերը ու հաղթականորեն մուտք գործեց ժամանակակից տիկնիկային թատրոնի բեմ ու դարձավ նրա կնքահայրը։

Ֆրանսիական տիկնիկային թատրոնի առաջին դերասանը, որի մասին հավաստի տվյալներ կան, Ժան Բրիոշեն է։ Սկսած 1649 թվականից, նա իր որդու հետ ներկայացումներ էր տալիս ո՛չ միայն քաղաքների հրապարակներում ու շուկաներում, այլև բարձրաստիճան մարդկանց տներում։ Ժան Բրիոշեն այնպիսի տիկնիկներ էր ստեղծել, որ նրա մասին ժամանակին գրել են, թե նա ստիպում էր փոքրիկ էակներին խոսել, վիճել, շարժվել։ Նրանք չարքեր էին հիշեցնում... Ժան Բրիոշեի վրա այս կարծիքը շատ թանկ նստեց։ Նրան կախարդ կոչեցին ու հրկիզեցին խարույկի վրա, որովհետև նրա ցուցադրած ներկայացումները հակառակ էին եկեղեցու շահերին, բացում էին ժողովրդի աչքերը կյանքի ճշմարտության առաջ։ Ժան Բրիոշեի դաժան ճակատագիրը չվախեցրեց տիկնիկավար դերասաններին։ Սեն-Ժերմենի տոնավաճառներում նորից հայտնվեցին նրանք ու սկսեցին ցուցադրել իրենց ներկայացումները։ Կարծես ժողովրդի ծոցից ծնվեց նրա սիրած տիկնիկ-հերոսը՝ Պոլիշինելը։ Ֆրանսիացիները սիրեցին նրան իր սուր լեզվի համար, որով խարազանում էր տիրող կարգերը։ Բավական էր որևէ փողոցի անկյունում կամ հրապարակում հայտնվեր Պոլիշինելը, անմիջապես նրա շուրջն էր համախմբվում հոծ մի բազմություն, որն անհագ ծիծաղում էր բութ ու ամբարտավան ոստիկանի ու խաբեբա վաճառականների վրա։ Այդ էր պատճառը, որ 1808 թվականին ֆրանսիական կառավարությունը արգելեց նրա ելույթները, հայտարարելով, որ տիկնիկային այդ թատրոնները, հատկապես Պոլիշինելը, պղտորում են ժողովրդի միտքը։

Լիոն քաղաքի տիկնիկագործ Մեգրեն ստեղծեց մի նոր տիկնիկ, որին կոչեց մուսյո Գինյոլ։ Տիկնիկ մուսյո Գինյոլը շուտով մոռացության մատնել տվեց Պոլիշինելին ու ինքը դարձավ հետագա ժամանակների ֆրանսիական ժողովրդական տիկնիկային ներկայացումների ամենասիրելի հերոսը։ 1920 թվականին Լիոն քաղաքում, ուր ծնվել էր մուսյո Գինյոլը, բազմաթիվ երկրպագուների ներկայությամբ, շուքով ու հանդիսավորությամբ կանգնեցվեց նրա արձանը։ Հիմա կանգնած է նա՝ տիկնիկային ժողովրդական թատրոնի հերոս մուսյո Գինյոլը մեծ քաղաքի հրապարակում, բարի ու մարդկային ժպիտով ողջունում է բոլոր նրանց, ովքեր այցելում են իրեն։

Իսպանիայում և Պորտուգալիայում ժողովրդական տիկնիկային ներկայացումների հիմնական հերոսը՝ Դոն-Կրիստովալ-Պուլչինելյոն էր, որի մասին համակրանքով ու սիրով է գրել Միգել դե-Սերվանտեսը իր հանճարեղ գրքի՝ «Դոն Կիխոտի» 2-րդ հատորում։

Շեքսպիրի հայրենիքում՝ Անգլիայում առանձնակի սեր և հետաքրքրություն կար դեպի տիկնիկային թատրոնը։ Անգլիացիների սիրած տիկնիկ հերոսի անունը միստր Պանչ էր, որի համբավը կարճ ժամանակամիջոցում մառախլապատ Լոնդոնի փողոցներից տարածվեց երկրով մեկ։ Միստր Պանչը փոքրիկ մի դագանակ ուներ ձեռքին, որով պատժում էր բոլոր նրանց, անկախ դեմքից ու դիրքից, ովքեր հանդգնում էին արհամարհել ու ոտնահարել հասարակ մարդկանց իրավունքները։

Ի՞նչ պիեսներ էին խաղում այդ հնագույն ժամանակների տիկնիկային թատրոնները։ Արդյոք կա՞ր մեկը, որ նրանց համար պիեսներ էր հորինում։ Ո՛չ։ Ժողովուրդն ինքն էր այդ թատրոնների դրամատուրգը։ Նրա ավանդությունները, բանահյուսությունից վերցրած գրական գործերն ու առակները տիկնիկավար դերասանների միջոցով դառնում էին պիեսներ ու ներկայացվում։ Այդ թատրոններում բառը, խոսքը հնչում էր իր երանգային գեղեցկությունների բոլոր առանձնահատկություններով։ Այնտեղ յուրաքանչյուր անձ ուներ իր բնա-



Պետրուշկա



# ՁՅՈՒՆԸ ԳԱԼԻՍ Է

*ԷԴՎԱՐԴ ՄԻԼԻՏՈՆՅԱՆ*

Ձյունը գալիս է, ձյունը պտտվում է,
Ձյունն սպասում է ինչ-որ մեկի,
Արդյոք ո՞վ է նա, որ ուշանում է
Եվ կարիք ունի ձյան վերմակի:

Երեխա՞ է նա, թե՞ մի շրջմոլիկ,
Թե՞ խեղճ պառավ է կամ խեղճ մի այծ,
Ձյունն սպասում է գույն գալի,
Որ կուզե դառնալ սպիտակ արջ:

Եվ ձյունն իջնում է, ձյունը գալիս է,
Պառկում է զգույշ, ինչպես շշուկ,
Ականջը ձայնի սպասում է լուռ,
Ինչպես մի կատու, ինչպես գործուկ:

Եվ ահա հեռվից գալիս է մի ձայն
Եվ այնպես թեթև գալի՜ս է, գալի՜ս,
Այնպես անձկատ, ինչպես վայրկյան,
Եվ ուրախ, ինչպես գարնան ամիս:

Եկավ նա փունջ-փունջ ծաղիկներ ձեռքին՝
Երկնքի կապույտ զգեստը հագած,
Եկավ նա շուլլ՝ պսակով բերքի
Եվ ամիսներով, օրերով անհայտ:

Եկավ ու հագավ ձյան վերմակը տաք,
Աստղե աչքերով ժպտում է բարի,
Եվ հարցնում է.—Ինձ չե՞ք ճանաչում,
Ես Նոր տարին եմ, ձեր Նոր տարին:

---

վրրությանը համապատասխան ձայնի այնպիսի երանգ ու հըն-չեղություն, որի միջոցով հեշ-տությամբ կարելի էր տարբե-րել ժլատին՝ առատաձեռնից, խե-լոքին՝ հիմարից, վախկոտին՝ քա-ջից: Տիկնիկավար դերասանները միաժամանակ կարողանում էին խաղացնել մի քանի տիկնիկ, օժտված էին դերասանական ար-վեստի առանձնահատուկ տվյալ-ներով:

Գերմանիայում համարյա ամեն փողոց, ամեն գյուղ ուներ իր տիկնիկային թատրոնը, որոնք ցուցադրում էին տարբեր բովան-դակություն ունեցող ներկայա-ցումներ, իսկ այդ թատրոնների դերասանները ժողովրդի կողմից սիրված ու հարգված մարդիկ էին: Գերմանացիները իրենց սի-րած տիկնիկ հերոսներին կոչում էին Նանսվուրստ և Կասպերել: Ա-ռաջինը տարածված էր հյուսի-սային, իսկ երկրորդը՝ հարավա-յին նահանգներում: Հանճարեղ Գյոթեի «Ֆաուստ» փիլիսոփայա-կան դրամայի համար նյութ է հանդիսացել գերմանական ժողո-վրրդական թատրոններից մեկի մի ներկայացման բովանդակու-թյունը: Այդ ներկայացման մեջ դոկտոր Ֆաուստի ծառան՝ զվար-ճասեր ու սրամիտ Կասպերլեն սիրում է լավ ուտել, խմել, երգել: Ոչ թե նա որկրամոլ է, դրա հա-մար է շատ ուտում, այլ նրան հա-ճախ չեն կերակրում և առիթը ներկայանալու դեպքում նա կուշտ ուտում է: Եվ ահա հայտ-նըվում է սատանան, առաջար-կում դոկտոր Ֆաուստին ու Կաս-պերլեին վաճառել իրենց հոգինե-րը, փոխարենը նրանց կտա այն, ինչ ուզում են: Դոկտոր Ֆաուստը համաձայնում է իր հոգին վա-





# ՄՈՐԵՂԲԱՅՐ ՆՇԱՆԸ

ԿԱՄԱՐԻ ՏՈՆՈՅԱՆ

Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Սեթի հայրն ու մայրը գործուղվեցին մի տարով հեռավոր հյուսիս՝ աշխատելու: Սեթին խնամում էր հորաքույրը, որ միայնակ կին էր: Ամռանը նա Սեթի՛ն ուղարկեց Մարանվան, մորեղբոր մոտ:

Մարավանը փոքրիկ գյուղ էր, անտառոտ բլուրների արանքում, գետակի ափին: Գյուղի մի ծայրում, հենց անտառի մոտ էլ, մորեղբայր Նշանի տնակն էր:

Եվ ահա, նստած էր Սեթը մորեղբոր խրճիթում, թախտին՝ ձեռքերը ծնկների արանքը խրած, նավթալամպի աղոտ լույսի տակ: Փայտե սեղանին, նրա առջև, դրված էին երկու բաժակ, կավե ամանի մեջ՝ պանիր, ափսեի մեջ՝ թարմ կարագ, լավաշ հաց, և շաքարաման: Դիմացը՝ սեղանի մյուս կողմում, նստած էր մորեղբայր Նշանը՝ կարճ ու ցից մազերով, չինկավուն կարճ մորուքով, սեղանի վրա ձեռքերն ամուր իրար ագուցած: Նայում էր ու լռում էր: Դրսում, անտառից վերև կապույտ երկինքը մթնում էր, խրճիթ էին հասնում գյուղական ձայներ՝ շան հեռավոր հաչոց, կովերի բառաչ:

— Ուրեմն դու երկու ամիս ինձ մոտ ես մնալո՞ւ,— ասաց մորեղբայրը:

— Այո՛,— ասաց Սեթը:

— Երկու ամի՞ս,— կրկնեց մորեղբայրը:

Քիչ առաջ մորեղբայրը պատի տակ օջախ էր վառել, վրան դրել էր ջրով լի թեյնիկը: Սեթը հոգնած էր և քունը տանում էր: Ամբողջ օրը նա անցկացրել էր գնացքի մեջ: Երեկոյան միայն հասան շրջկենտրոն: Երկար սպասեց, մինչև եկավ Մարավան տանող ավտոբուսը: Եվ հետո, ամբողջ չորս ժամ, քսան կիլոմետրանոց ոլոր-մոլոր ճանապարհին շարունակ ցնցվում էր, ավտոբուսի ետևի նստարանին: Հիմա նրա դիմաց նստած էր մորեղբայրը, մռայլված, ու լռում էր:

— Քիչ հետո թեյը կեռա,— ասաց նա:— Սա ձեր գազօջախի վրա եփված թեյը չէ:

— Ավելի համե՞ղ է,— հարցրեց Սեթը:

Մորեղբայրը ոչինչ չպատասխանեց: Խրճիթի անկյունից լսվեց ճռիկի սուր ճռռոցը և պապ շարունակվեց թույլ ձայնով: Գալիս էր թարմ գոմաղբի և չոր խոտի բուրմունք:

ճառել սատանային, միայն թե սատանան վերադարձնի իր երիտասարդությունը և ինքը նորից հանդիպի իր սիրած էակին: Իսկ Կասպերլեն, առանց երկար մտածելու, սատանայից խնդրում է մի շիշ գինի ու մի կտոր երշիկ, ստանում է, ուտում, խմում և ընկնում փորձանքի մեջ, այլևս չի կարողանում օձիքը սատանայի ձեռքից ազատել: Ահա անպաճույճ այս պատմության հիման վրա Գյոթեն ստեղծեց համաշխարհային գրական գլուխ-գործոցներից մեկը՝ «Ֆաուստ» փիլիսոփայական դրաման: Հետագայում Գյոթեն, ասես, վարձահատույց լինելու համար, գրեց մի քանի տիկնիկային պիեսներ, իսկ կոմպոզիտոր Հայդնը ստեղծեց այդ պիեսներից մեկի երաժշտությունը:

Տիկնիկային թատրոնի սիրահար էր նաև ֆրանսիացի հանրահայտ կին գրող Ժորժ Սանդը: Նա իր տանը ուներ տիկնիկային թատրոն, որի համար բազմաթիվ պիեսներ է գրել: Այդ թատրոնի տիկնիկավար-դերասաններ էին գրողի որդի Մորիս Սանդը և նրա ընկերները: Իսկ հանդիսատեսների մեջ հաճախ կարելի էր հանդիպել Շոպենին, Ֆլոբերին, Տուրգենևին:

Իր գունագեղությամբ ու առանձնահատկությամբ զարմանք է պատճառում արևելյան ժողովուրդների՝ Չինաստանի, Հնդկաստանի, Ճապոնիայի, Միջին Ասիական ժողովուրդների տիկնիկային արվեստը, որը մինչև օրս որոշ տեղերում դեռ շարունակում է գոյությունը:

Այսօր աշխարհի շատ երկրներում գոյություն ունեն տիկնիկային բազմաթիվ պրոֆեսիոնալ թատրոններ, որոնց ներկայացումները մեծ ուրախություն ու հաճույք են պատճառում թե՛ մեծահասակներին, թե՛ երեխաներին:



— Մայրդ գրում է, որ դու ինձ մոտ պիտի մնաս մինչև իր գալը: Իսկ նա շուտով չի գալու: Երկու ամիսը քիչ ժամանակ չէ:

— Այո՛,— ասաց Սեթը:

Դրսում մթնում էր: Սեթի համար այստեղ նոր շատ բան կար, խրճիթում և առհասարակ գյուղում: Բայց հիմա նա միայն քնել էր ուզում:

— Հիմա թեյը կեռա,— կրկնեց մորեղբայրը:— Դա ձեր քաղաքի թեյը չէ:

Նա ինչ-որ բանից դժգոհ էր:

— Անտառում պահակություն եմ անում,— ասաց նա,— մայրդ գիտե, ստանում եմ ընդամենը վաթսունհինգ ռուբլի, նա լավ գիտե, դա այնքան էլ շատ չէ: Ես անտառով եմ ապրում: Անասունի կերն էլ անտառից եմ բերում, վառելիքն էլ: Մի կերպ ծայրը ծայրին եմ հասցնում, ետ գցելու համար մի քոռ կոպեկ չի մնում: Մայրդ այդ գիտե: Երեք տարի առաջ եկավ այստեղ, գիտե, թե ինչպես եմ ապրում... Թեյը եռաց...

— Նա քո մասին ինձ շատ է պատմել,— ասաց Սեթը:— Նա ասում էր, որ դու շատ բարի մարդ ես:

— Ես չգիտեմ, թե ինչ է ասել մայրդ, բայց եթե նա դժգոհել է իմ բնավորությունից, ապա ոչ մի կատաղած շուն չի կարող իմ միջից հանել այդ բնավորությունը: Դա այդպես կա: Դու, ահա, եկել ես ինձ մոտ, ապրելու, հիմա մեկ բաժակի փոխարեն ես պետք է երկու բաժակ դնեմ սեղանին, երեք գդալ շաքարավազի փոխարեն վեց գդալ դնեմ թեյի մեջ... և այսպես՝ մնացած ամեն ինչը... Այդ ամենը չի կարելի հաշվի չառնել... և ապա ինչպե՞ս կարելի է ապրել, եթե հաշվի չառնվի: Առաջ ես կասկարաչի վրա ամեն անգամ թխում էի երեք բլիթ, և դա ինձ բավականացնում էր երեք օր: Հիմա պիտի ամեն անգամ թխեմ վեցը...— Նա բաժակի մեջ թեյ լցրեց, հրեց Սեթի կողմը.— Խմի՛ր, հաց ու պանի՛ր վերցրու:

Թեյը խմեցին, պառկեցին քնելու: Գիշերը տաք էր, լուսամուտից երևում էր, թե ինչպես անտառի ետևից բարձրանում էր լուսինը, կապտավուն լույսով լուսավորելով ծառերի կատարները: Թանձր մութի միջից գալիս էր առվակի քչքչոցը: Խրճիթի մի անկյունում ամբողջ գիշեր անքուն ճռռաց ճռիկը: Սեթը հիշեց երեկոյան իր խոսակցությունը մորեղբոր հետ և մտածեց, որ մորեղբայրը այնքան էլ ուրախ չէր իր գալստյան առթիվ:

Առավոտ վաղ, երբ Սեթը դեռ քնած էր լինում, մորեղբայրը գլխին դնում էր կլոր բերետը, վերցնում էր հրացանը, գնում էր անտառ: Նա սեղանի վրա Սեթի համար թողնում էր նախաճաշ՝ մի բաժակ սառը կաթ, հաց, պանիր: Սեթը թափառում էր գյուղում, նա ծանոթացել էր գյուղի երեխաներին, նրանց հետ լողանում էր գետակում՝ կամրջի տակ, հին ջրաղացի մոտ:

Նախքան գետակ հասնելը, անցնում էին խանութի մոտով: Տղաները խանութպան Երեմից կոնֆետ էին գնում: Սեթը փող չուներ. նա սիրտ չէր անում մորեղբորից փող ուզել: Տղաները նրան կոնֆետ էին տալիս:

— Սա ո՞վ է ձեր մեջ, նա ինձանից երբեք կոնֆետ չի գնում,— մի անգամ հարցրեց խանութպան Երեմը:

— Նա քեռի Նշանի քրոջ տղան է:

— Օ՜, ինչո՞ւ նա այդ մասին ոչինչ չի ասում,— ասաց խանութպան Երեմը:

— Գիտե՞ս ինչպիսի ուժեղ տղամարդ է քո մորեղբայրը,— հարցրեց նա Սեթին:— Օ՜, այդ մասին ամբողջ Մարավանում գիտեն: Մի անգամ, անտառում, Սուրբ Նշանի մոտ նրան հանդիպում է արջը: Ետի թաթերի վրա կանգնած, ծառից տանձ պոկելիս է լինում: Դե, ինչ կա, մտածում է մորեղբայրդ, գազանը շատ հազվադեպ է մարդու վրա հարձակվում, քաղցած է, բերանը քաղցրացնում է, շուռ կգա, կգնա: Բայց արջը շուռ է գալիս ու բռնում է մորեղբորդ մեջքից: Բռնում են իրար մեջք, ու մորեղբայրդ այնպես է սեղմում, որ գազանը մեջքի ցավից սկսում է ոռնալ, այդպես էլ, գրկի մեջ առած, տանում է քարափի գլուխը ու այնտեղից ցած գցում...

Գյուղում մորեղբայր Նշանին հարգում էին: Հենց իմանում էին, որ Սեթը նրա քրոջ տղան է, միանգամից բարեկամաբար էին նայում նրան:

Մորեղբայրը անտառից գալիս էր երեկոյան, երբ արևը արդեն թեքված էր լինում և ծառերը պղտորվում էին կարմրավուն մշուշի մեջ: Ուսերով հրելով բացում էր փայտե ցանկապատի դուռը, խոտանոցի մոտ ուսից վար էր բերում խոտի խոշոր խուրձը, թափ էր տալիս շորերը, դժգոհ փնչացնում էր: Ճաշում էին փայտե սեղանի վրա, բաց պատուհանի առջև, և մորեղբայրը ձեռքերը սեղանին դրած, նստում էր անխոս: Խրճիթի կիսամութում նա թվում էր քարից, նրա քառակուսի ուսերը չէին շարժվում, և նա չէր շարժում կլորավուն, նեղ ճակատով գլուխը, կլորիկ աչքերի կանաչ բիբերով անթարթ նայում էր մի ինչ-որ տեղ: Այսպես, նա Սեթին հիշեցնում էր այն քարե կուռքերին, որոնք նա տեսել էր նկարազարդ ամսագրերում և որոնց կանգնեցրել էին հազարամյակներ առաջ տափաստաններում բնակվող մարդիկ:

Մի քանի օր անց, մորեղբայրը Սեթին իր հետ տարավ անտառ: Երկար ու դանդաղ բարձրանում էին արահետով: Անտառում խոնավ էր, հեղձուցիչ: Երբեմն կանգնում էին, շունչ առնելու համար:

— Մի ժամանակ թավուտում գազանը սկսեց պակասել,— պատմում էր մորեղբայրը:— Ամեն օր մի տասը որսորդ էր մտնում անտառ, ամեն րոպե մեկ էլ տեսար հրացան տրաքեց: Գազանն էլ պակասեց անտառից: Կառավարությունը արգելեց, հեռու տեղից բծավոր եղնիկ, վարազ, այծյամ բերեց բաց թողեց անտառում: Հիմա թավուտում գազանը էլի շատ է, մարդուց էլ վախ չունի:

Հասան բարձրավանդակ, անտառը կտրելով դուրս



եկան մի ընդարձակ, արևոտ բացատ, որի մեջտեղում, ասես անմիջապես երկնքի տակ, մի փոքրիկ լճակ արտացոլում էր ծառերն ու կապտավուն երկինքը:

Նստեցին խոտի ծածկի տակ: Շուրջը փարթամ աճել էր խոտը, լճակի ջուրը թեթևակի սարսռում էր, և ջրերում դողդողալով կանաչն ու կապույտը խառնվում էին իրար: Տոթ էր, օդում բզզում էին մեղուները: Մորեղբայրը վերցրեց գերանդին և սկսեց հնձել խոտը: Սեթը պառկել էր ծածկի տակ փռված չոր խոտի վրա, աչքերը կկոցած նայում էր երկնքին: Գերանդու համաչափ խշխշոցը լսվում էր մոտերքից, կամացկամաց հեռանում էր, ապա նորից սկսում մոտենալ: Ամեն անգամ գերանդին քաշելիս մորեղբայրը՝ փխը ծգած, ուսերով կտրուկ պտտում էր: Քիչ անց, նա վար դրեց գերանդին, եկավ նստեց Սեթի մոտ: Ծանր էր շնչում, քրտինքը ճակատից հոսել էր աչքերի վրա, վերնաշապիկի մեջքն ու կուրծքը թաց էին:

— Հոգնում եմ,— ասաց նա:— Առաջ մեկ շնչում տասնհինգ շարք հնձում էի, ա՛յ, այստեղից մինչև այն ծառը, տասնհինգ շարք: Շունչս չի հերիքում, ծերացել եմ...

— Գյուղում պատմում են, թե ինչպես ես դու արջի հետ մենամարտել,— ասաց Սեթը:

— Մենամարտելը ճիշտ է, բայց որ ասում են գավանին քարափից գցել եմ, դա ճիշտ չէ: Պարզապես մեջքը թողեցի, գազանը գրկիցս դուրս պրծավ ու փախավ: Հետո շատ եմ հանդիպել այդ արջին, ինձ տեսնելուն պես դառնում էր ու ծլկում... Բայց դա ե՞րբ է եղել... Հիմա, տեսնում ես, շունչս կտրվում է:

— Տոթ է, տոթին մարդը շուտ է հոգնում,— ասաց Սեթը:

Մորեղբայրը թերահավատ շարժեց գլուխը:

— Տոթ է, տոթին մարդը հոգնում է: Մարդու տրամադրությունից էլ է կախված, թե որքան արագ կհոգնի: Տրամադրությունդ եթե վատ է, պարզ է, գործը առաջ չի գնա: Բացի այդ, տարիքս առել եմ...

— Դու քանի՞ տարեկան ես, մորեղբա՛յր,— հարցրեց Սեթը:

— Հիսունհինգ:

— Դա ի՞նչ տարիք է որ: Հիմա յոթանասուն տարեկան մարդիկ մինչև քառասուն կիլոմետր վազում են:

Մորեղբայրը թերահավատ շարժեց գլուխը.

— Քառասուն կիլոմե՞տր:

— Ո՛չ, քառասուներկու, դեռ մի բան էլ ավելի:

Սեթը վերցրեց գերանդին և գնաց դեպի խոտհարքը: Նա առաջին անգամ էր ձեռքը վերցնում գերանդին, բայց հնձելը, ոչինչ, կարողանում էր: Վերջին օրերը նրա դեմքը արևից խանձվել էր, մանավանդ թշերն ու քիթը: Նրա և մորեղբոր մեջ մի ընդհանուր բան կար: Երկուսն էլ շիկավուն էին, միայն թե Սեթը ավելի բարձրահասակ էր, իսկ մորեղբայրը՝ ցածր ու ամրակազմ:

— Մեջքո՛վ, մեջքո՛վ ուժգին քաշիր,— ասում էր մորեղբայրը:— Ա՛յ, այդպես...

Հնձելով, Սեթը հասավ անտառին, ետ եկավ: Բոլորովին հոգնել էր:

— Ոչինչ, առաջին անգամվա համար վատ չէ,— ասաց մորեղբայրը:— Կսովորես: Ազրես, պինդ ես, երևում է մեզանից ես:

Նստեցին նախաճաշելու:

— Ո՞ր դասարանում ես,— հարցրեց մորեղբայրը:

— Յոթերորդ:

— Այրես... Ես չորս դասարան եմ վերջացրել: Մեր ժամանակ ուսումին այնքան էլ նշանակություն չէին տալիս: Բայց մայրդ խելոք էր: Ազրի: Իսկ քառասուներկու կիլոմետր վազելու մասին դու ճի՞շտ ես ասում:

— Իմ աչքով եմ կարդացել:

— Որ գրված էր, ուրեմն կարելի է հավատալ: Անցած տարի ինձ շատ լավ էի զգում: Մեկ տարում ինչքա՜ն պիտի փոխված լինեմ որ...

Հնձեցին, մինչև արևը բարձրացավ և անտառում տոթը սկսեց սաստկանալ: Խոտը եղաններով հավաքեցին դեզ-դեզ, մնացածը մորեղբայրը իրար վրա հավաքեց, ծնկեց վրան, ու ամուր ձեռքերով վրա քերելով, մի խոշոր խուրձ պատրաստեց: Երկար ձողի վրա անցկացրեց խուրձը, ուսն առավ ու ճանապարհ ընկավ դեպի գյուղ:

Երեկոյան պոչի հետ անտառը լցվում էր ձայներով

ձյուղերի արանքով անցավ մի ուժգին խշխշոց, ինչ-որ մոտիկ տեղից եկավ ջրի քչքչոց, ինչ-որ մեկը ծառերի ետևում տրորեց խաշամը և ինչ-որ սուր ծվծվոց հանկարծ տարածվեց հեռու: Մորեղբայրը խուրձն ուսած, քայլում էր ծանր, կածանի խոնավ հողը դոփելով: Կանգ էր առնում, ուսից-ուս էր տեղափոխում խուրձը: Նրանց գլխավերևում անտառով մեկ տարածվեց սուր կչկչոց: Կաչաղակն էր, կածանով մարդ անցավ՝ նա պիտի լուր տա անտառի բոլոր բնակիչներին, եղնիկը անցավ բացատով՝ նա գիտե, թավուտում վարազը դնչով փորփրեց խաշամը՝ գիտե, նա այդ ամենի մասին պիտի լուր տա անտառի բնակիչներին:

Մորեղբայրը ուսից վար բերեց խուրձը:

— Այստեղ աղբյուր կա, ջուր խմենք,— ասաց նա:— Առաջ մի շնչում խուրձը հասցնում էի գյուղ: Հիմա, տեսնո՞ւմ ես...

— Սա շատ մեծ խուրձ է,— ասաց Սեթը:— Ծանր է:

— Մեծ խուրձ է,— համաձայնեց մորեղբայրը:

Ջուր խմեցին, խուրձը հագցրին ձողի մեջտեղը, Սեթը ուսին դրեց ձողի մի ծայրը, մորեղբայրը՝ մյուսը, և շարունակեցին կածանով վար իջնել:

— Մեր կողմերում պատահում է, որ ձմեռը շատ երկարում է,— պատմում էր մորեղբայրը:— Անասնակերը գարնանը վերջանում է: Գոմում անասունը քաղցից բառաչում է: Այդպիսի դեպքերում, գյուղում գիտեն, որ ինձ մոտ միշտ էլ խոտ կճարվի: Գարնանը խոտը լավ գին ունի...

Հանկարծ կանգ առավ.

— Տե՛ս, իմ հին ծանոթը,— ասաց նա:

Կածանի վրա նստած էր արջը: Նրանց տեսնելով, արջը գլուխը վեր ցցեց, բացեց ահագին երախը և բըկլըսեց վայրագած մըթմըթալ:

— Հեռո՛ւ գնա,— բղավեց մորեղբայրը:

Արջը շարունակում էր նստած մնալ և մրթմրթալով այս ու այն կողմ էր դարձնում բաց երախը:

—Հեռո՛ւ գնա,— բղավեց մորեղբայրը,— սա իմ ճանապարհն է, ես ամեն օր այս ճանապարհով պիտի գամ-գնամ, այդպես է պահանջում գործը:

Արջը տեղից չէր շարժվում: Նրանք խուրձը վար դրին:

— Նրա մտքում ինչ-որ բան կա,— ասաց մորեղբայրը:

Արջը չէր հեռանում ճանապարհից, նա ավելի լայն բացեց երախը և սկսեց վայրագին ոռնալ:

— Այդպե՞ս հա՛,— ասաց մորեղբայրը, ուսից վար բերեց հրացանը, հանկարծ գազանը պոկվեց տեղից և մոթթը թափ տալով, ոստյուններով նետվեց դեպի նրանց կողմը: Մորեղբայրը խույս տվե՛ց, սայթաքեց, գլորվեց մի կողմ, հրացանը վայր ընկավ, և նա սկսեց գլորվել դարնիվար: Արջը՝ նրա ետևից: Սեթը փախավ մի կողմ, ապա ետ դարձավ, ճանկեց հրացանն ու վազեց վար: Գազանը դժվարությամբ էր իջնում դարնիվար: Սեթը համարյա հասավ նրան, կանգ առավ, սեղմեց ձգանը, հրացանը որոտաց: Արջը ետ չնայեց, լայն ոստյուններով փախավ անտառի խորքը:

Մորեղբայրը ելավ, թափ տվեց շորերը, փնչաց, գտավ բերետը, դրեց գլխին:

— Ա՜յ նենգ գազան, ա՜յ նենգ գազան,— ասում էր վրդովված:— Ուրիշ անգամ, տեսնում էր թե չէ, ճանապարհը փոխում էր, մի կողմ էր քաշվում:

— Իսկ այսօր ինչո՞ւ հարձակվեց,— հարցրեց Սեթը:

— Որովհետև չգիտեր, թե ինչ հիանալի տղա ես դու, Սե՛թ,— ասաց մորեղբայրը:

Նրանք ուսեցին ձողը և շարունակեցին իջնել կածանով: Մթնում էր, սարալանջերի անտառները պատվում էին կապտավուն մշուշով: Վարում նշմարվեցին գյուղի հեռավոր հատուկենտ լույսերը, և Սեթին թվաց, թե լսում է մարդկանց հեռավոր ու հարազատ ձայներ:

— Հասնենք տուն, լավ մեղր ունեմ, մեղր կուտենք ու չորացած սնկի ապուր,— ասում էր մորեղբայրը:— Դու չգիտես, թե ինչ համեղ բան է սնկի ապուրը...



# ԽՈՐՀՐԴԱՆՇՈՂ ՔԱՐԸ

ՅՈՒՐԻ ՍԱՀԱԿՅԱՆ

Իմ մեջ ննջում են
Ինչպիսի՜ ձևեր,
Իմ մեջ բանտված են
Ինչպիսի՜ թևեր,
Իմ մեջ փակված են
Դեմքեր ինչպիսի՜,
Եղնիկի,
Մանկան,
Վագրի,
Հերոսի...

Աչք է պետք,
Որ տեսնի:
Ձեռք է պետք,
Որ զգա:

Ես գիտեմ,
Նա կգա:
Կգա ու կարձակի
Քարեղեն իմ ներսում
Սպասող աղջկան,
Քարեղեն իմ ներսում

Կաշկանդված կայծակին,
Վահագնին,
Մհերին,
Վարդանին,
Ղուկասին...

Ես գիտեմ,
Նա կգա,
Կգտնի ու կասի.
— Ահա՜ քեզ իմ սիրտը,
Բա՛ց թող իմ ներսից:

*Թևավոր խոսքեր*

## ԱՀԱ ԹԵ ՈՐՏԵՂ Է ԹԱՔՆՎԱԾ ՇԱՆ ԳԼՈՒԽԸ

Այսպիսի մի պատմվածք կա. ավստրիացի զինվոր Սիգիզմունդ Ալտենշտեյգը բոլոր արշավներն ու ճակատամարտերն անց էր կացնում իր շան հետ: Մի անգամ Նիդերլանդներում ճամփորդելիս, շունը կյանքի գնով տիրոջը փրկում է մահից: Երախտապարտ զինվորը հանդիսավոր կերպով հողին է հանձնում իր չորքոտանի ընկերոջը և հուշարձան կանգնեցնում գերեզմանին, որ կանգուն է մնում երկու հարյուրամյակ՝ մինչև 19-րդ դարի սկիզբը:

Հետագայում տուրիստները շան հուշարձանը կարող էին գտնել տեղի բնակիչների օգնությամբ միայն: Հենց այդ ժամանակներում էլ ծնվել է այս ասացվածքը՝ «Ահա թե որտեղ է թաղված շան գլուխը», որն այժմ ունի այս իմաստը. «փնտրածը գտավ», «գտավ ճշմարտությունը»:

Բայց կա ավելի հին ու ոչ պակաս հավանական աղբյուր՝ մեզ հասած այս ասացվածքի: Երբ հույները վճռում են ճակատամարտ տալ պարսից արքա Քսերքսեսին, նրանք նախօրոք նավ են նստեցնում ծերերին, կանանց ու երեխաներին և ուղարկում Սալամին կղզին:

Պատմում են, որ Պերիկլեսի հոր՝ Քսանտիպոսի շունը, չկամենալով բաժանվել տիրոջից, լողալով գնում է նավի ետևից և հասնում Սալամին: Հոգնածությունից ուժահատ, նա այդտեղ էլ սատկում է:

Հին դարերի պատմաբան Պլուտարքոսի վկայությամբ, կղզու ափին կանգնեցնում են կինոսեմա, այսինքն շան հուշարձան, որը երկար ժամանակ ցույց էին տալիս հետաքրքրասերներին:

Գերմանացի որոշ գիտնականներ էլ գտնում են, որ այս արտահայտությունը ստեղծել են գանձ որոնողները, որոնք վախենալով իբրև թե այդ գանձերը պահպանող չար ուժերից, չէին համարձակվում ուղղակի հիշատակել իրենց որոնումների նպատակի մասին և պայմանականորեն ասում էին «սև շան» մասին, դրա տակ հասկանալով և՛ սատանա, և՛ գանձ:

Այսպիսով, այս վերջին վարկածի համաձայն, «Ահա թե որտեղ է թաղված շան գլուխը» արտահայտությունը նշանակում է. «Ահա թե որտեղ է թաղված գանձը»:

## ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՋՐՀԵՂԵՂ

Հին ժողովուրդներից շատերի մոտ պահպանվել է ավանդություն ինչ-որ սոսկալի ջրհեղեղի մասին, որն ընդգրկել է այն ժամանակներում հայտնի ողջ աշխարհը: Այս մասին պատմում են հունական, հնդկական, չինական և բաբելական առասպելները. այդ զարհուրելի աղետի մասին գրառումներ կան ասորական հինավուրց կավե տախտակների վրա:

Դրանց մեջ ամենից հայտնին «Աստվածաշնչում» եղած պատմությունն է: Մեղսագործ մարդկության վրա զայրացած աստված վճռում է ոչնչացնել մարդկային ցեղը, կենդանի թողնելով միայն բարեպաշտ Նոյին և նրա ընտանիքը: Քառասուն օր ու գիշեր անձրև է տեղում, ջրի տակ առնելով ամենաբարձր լեռներն անգամ: Ամեն ինչ կործանվում է ջրի տակ, փրկվում են Նոյի տապանի բնակիչները միայն:

Հարկ չկա ասելու, որ սա պարզունակ մի հեքիաթ է. աշխարհի բոլոր ջրերը բավական չէին ընտեղծելու համար ութ կիլոմետրանոց (երկրի ամենաբարձր լեռնագագաթը գրեթե 9 հազար մետր բարձրություն ունի) ջրի շերտ ցամաքի վրա: Գիտնականները կարծում են, որ այս պատմության մեջ արտացոլված է ինչ-որ սոսկալի, բայց ոչ ամենևին համաշխարհային ջրհեղեղի մասին եղած աղոտ հիշողությունը: Այժմ մենք կատակով «համաշխարհային ջրհեղեղ» ենք ասում ամեն մի երկարատև անձրևի, տեղատարափի կամ վատ եղանակի ժամանակ: Ասում ենք նաև «մինչջրհեղեղյան» ժամանակներ, երբ ուզում ենք ասել շատ վաղուց, անհիշելի ժամանակներից ի վեր:



# ԻՄ ԱՅԲԲԵՆԱՐԱՆԻ

*ԼԻՊԱՐԻՏ ՍԱՐԳՍՅԱՆ*

րդեն մեծ տղա ես,— ասաց մայրս,— երբ դպրոց են գնում, արդեն մեծ են:

Ես լուռ քայլում էի նրա կողքից:

Գյուղում միակ թիթեղյա տանիքով դպրոցի միահարկ շենքը անծանոթ չէր ինձ: Թաղի տղաներով հաճախ էինք գնում այնտեղ՝ ֆուտբոլ խաղալու: Ֆուտբո՜լ... Հիմա ծիծաղելի է հիշելն անգամ: Հին շորի լաթերի վրա թել էինք փաթաթում և գնդակը պատրաստ էր: Ավելի շատ բոբիկ ոտքերս քարերին էինք խփում, քան գնդակին:

— Դասերին ուշադի՛ր կլինես,— շարունակում էր մայրս,— ուսուցչի ո՛չ մի խոսքը բաց չթողնես: Քույրերդ լավ են սովորում, դու տղա ես, դու պետք է ավելի լավ սովորես:

Դպրոցի բակը լիքն էր երեխաներով: Առաջին դասարանցիները իրենց մայրիկների, տատիկների կամ պապիկների հետ էին, որոնք խրատում, խորհուրդներ էին տալիս նրանց ինչպես մայրս՝ ինձ: Զանգը հնչեց: Միջահասակ, խիստ դեմքով ուսուցչուհին մեզ ներս տարավ:

— Դուք տո՛ւն գնացեք,— ասաց նա մեր ծնողներին,— իրենք մեծ են արդեն, առանց ձեզ էլ տուն կգան:

«Իսկապես մեծացել ենք»,— մտածեցի ես, այդ ե՞րբ մեծացանք:

— Իմ ազգանունը Աբրահամյան է,— ասաց մեր առաջին ուսուցչուհին,— ես ձեզ պետք է սովորեցնեմ տառեր ու թվեր, որ կարողանաք գրքեր կարդալ ու հաշիվներ անել: Ձեզ պետք է դաս տար ընկեր Պողոսյանը, բայց նա երեկ ռազմաճակատ մեկնեց:

Ուսուցչուհին տխուր դուրս նայեց պատուհանից: Դրսում սեպտեմբերյան արևոտ օր էր, ծառերին ծլվլում էին ծիտիկները: Մոտիկ՝ Արութին պապի այգում, դեղնել էին տանձերը, կարմրել խնձորենիները:

— Առաքելյան Արա՛մ,— ուսուցչուհին մեկը մյուսի ետևից կարդում էր մեր անունները:

Փոքրիկ տղաներն ու աղջիկները շփոթված ոտքի էին կանգնում:

— Պետք է ասել՝ ներկա,— սովորեցրեց ուսուցչուհին:

Բոլորը ներկա էին: Ուսուցչուհին գոհ մնաց:

Առաջին օրը դժվար անցավ: Հետո կամաց-կամաց ընտելացանք դասին ու զանգին: Դպրոցը հաճելի դարձավ ու շատ սիրեցինք մեր ուսուցչուհուն: Տետրերի մեջ տառեր էինք գրում, իրար գումարում թվեր: Դասագիրք դեռ չունեինք:

— Շուտով Այբբենարաններ կբաժանեմ,— ասաց ընկեր Աբրահամյանը,— կսկսեք տառերն իրար կապել, կարդալ:

Մի առավոտ էլ նա դասարան մտավ դասագրքերի կապոցը ձեռքին: Դրանք անշուք գրքեր էին, նախորդ տարիների աշակերտների օգտագործած դասագրքերը: Նորից դասամատյանի ցուցակը մեջտեղ եկավ:

— Առաքելյան Արամ...

Սիրտս դող էր ընկել. մատյանի ամենավերջին անունը իմն էր. չլինի՞ թե ինձ գիրք չհասնի, չլինի... Փորձում էի հաշվել ուսուցչական սեղանին դարսված գրքերի և աշակերտների թիվը: Անհամբերությունից շունչս կտրվում էր: Վերջին գիրքը հանձնելով աշակերտներից մեկին, ուսուցչուհին հանգիստ հարցրեց.

— Ո՞ւմ գիրք չհասավ...

Ես և մի շիկամազ, պեպենոտ աղջիկ ոտքի կանգնեցինք:

— Ոչինչ, ձեզ համար էլ կճարենք,— մտահոգ խոսեց ընկեր Աբրահամյանը:

Ես հազիվ էի զսպում ինձ, որ լաց չլինեմ: Կարծում էի, թե բոլորից շատ ես էի ուզում դասագիրք ունենալ ու ինձ չհասավ:



# ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԸ

*Ն. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ*

Տուն գնալով ազատություն տվի արցունքներիս:

— Ի՞նչ է պատահել,— հարցրեց մայրս:

Պատասխանի փոխարեն հեկեկում էի, չէի կարողանում խոսել:

— Մի՛ լացիր,—վերջապես իմանալով պատճառը, մխիթարեց մայրս,—ընկեր Աբրահամյանը որ խոստացել է, անպայման կճարի:

Դժվար էր այն օրերին գիրք ճարելը, շատ էր դժվար: Իմ պեպենոտ թախտակիցը հաջորդ օրը դպրոց բերեց մի Այբբենարան. մորաքրոջ աղջիկն էր նվիրել: Դասարանի միակ դասագիրք չունեցողը ես մնացի:

Անցավ մեկ ամիս: Ես հույս չունեի այլևս, թե սեփական դասագիրք կունենամ: Դաս էի սովորում ուրիշների դասագրքերով: Բայց ահա մի օր ընկեր Աբրահամյանը դասարան մտնելով՝ ուրախ դիմեց ինձ.

— Լևո՛ն, դու էլ Այբբենարան ունեցար,—և սեղանիս դրեց մաքուր դասագիրքը: Անսպասելի ուրախությունից շփոթվեցի, նույնիսկ մոռացա շնորհակալություն հայտնել:

— Լավ կպահես,—խոսեց ուսուցչուհին,—չկեղտոտես, ընկեր Պողոսյանի գիրքն է:

Հուզմունքով բացեցի առաջին էջը: Գեղեցիկ ձեռագրով գրված էր՝ «Արտաշես Պողոսյանի գրքերից 1943 թ.»: Ուրեմն ինձ բաժին է ընկել առաջին դասարանի նախկին ուսուցիչ ընկեր Պողոսյանի գիրքը, այն Պողոսյանի, որ ռազմաճակատ է գնացել՝ կռվելու ֆաշիստների դեմ: Ընկեր Աբրահամյանը մեզ պատմել էր պատերազմի մասին, ասել, որ մեր զորքերը հերոսաբար կռվում և ոչնչացնում են ֆաշիստ-թշնամիներին և շուտով կհաղթեն: Դպրոցից ռազմաճակատ էին մեկնել ուսուցիչներից շատերը, դրանցից վերջինը և ամենաերիտասարդը ընկեր Պողոսյանն էր:

Այբբենարանը ավելի թանկ դարձավ ինձ համար: Ես դողում էի նրա ամեն թերթի վրա. չէի թողնում ոչ մեկը ձեռք տա, շաբաթը մեկ փոխում էի լրագրից պատրաստված շապիկը:

Մի օր բակում խաղում էի ընկերներիս հետ, երբ մեր տնից լացի ձայն լսեցի: Վազեցի, տեսա ընկեր Պողոսյանի մայրը ձեռքն էր առել Այբբենարանը, արցունքն աչքերին մրմնջում էր.

— Բալե՛ս, իմ լավ բալե՛ս...

Ինձ տեսնելով՝ նրանք մի քիչ զգաստացան:

— Իմ բալիս գիրքը լա՛վ պահիր, Լևո՛ն ջան,— ինձ դիմեց Սոնա տատը:—Չէի ուզում տալ, բայց Վարդուհին համոզեց, ասաց՝ Լևոնը ընդունակ տղա է, Արտաշեսն էլ որ այստեղ լիներ, կտար: Չկարողացա մերժել...

Սոնա տատը մի անգամ էլ համբուրեց որդու գիրքը և շուտով մորս հետ դուրս եկավ բակ: Ես գիտեի, լսել էի ծանր լուրը: Զգուշու[illegible] ձեռքս առա զոհված ուսուցիչ-զինվորի Այբբենարանը, որ ինձ բաժին ընկած առաջին դասագիրքն էր և ամո՛ւր, ամո՛ւր սեղմեցի կրծքիս:

## ՀՈԳՆԵԼ ԵՆ

*ԱՐՓԻՆԵ ԳՐԻԳՈՐՅԱՆ*

Վաստակած հողը
Բերք տալուց հետո,
Նորից հոգնել է
Ու հանգույց-հանգույց
Փաթիլվող ձյան տակ,
Հազարավաստակ՝
Մուշ-մուշ քնել է:

Խնձորի ծառը
Բար տալուց հետո
Զգեստափոխվել,
Իր տերևախուրձ
Գետին վերարկուն
Հագից պոկել է
Ու ննջել քամուն:

Արծաթե առուն
Հոսել-խոսելուց
Նույնպես հոգնել է,
Ու բյուրեղացած
Սառցե հունի մեջ
Լռել-քնել է...

# ԳԻՇԵՐՕԹԻԿԻ ԽՈՀԱՐԱՐ

ԿԱՐԼԵՆ ԳԵՎՈՐԳՅԱՆ

Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ

Տարիներ առաջ սովորում էի գիշերօթիկ դպրոցում, ուր մի այսպիսի կանոն կար. բարձր դասարանցիներս պարտավոր էինք հերթով աշխատել խոհանոցում. խոհարարը Սեթի պապն էր, կամ ինչպես մենք՝ աշակերտներս էինք կատակով անվանում նրան, Լռակյաց Սեթի Առաջինը: Չգիտեմ այս անունը ո՞վ և ե՞րբ էր կնքել, բայց նա իսկապես խիստ լռակյաց էր և իր արտաքինով էլ նման էր հին եգիպտական փարավոնի: Ճիշտ է, մեզանից ոչ ոք իսկական փարավոն չէր տեսել, բայց մեկ թվում էր, թե փարավոնները պետք է ճիշտ և ճիշտ Սեթի պապի նման լինեին:

Մի օր, երբ ես հերթապահում էի խոհանոցում, անզգուշորեն շաքարավազի փոխարեն աղ լցրեցի թեյի մեջ և... Լռակյաց Սեթի Առաջինը հանկարծ որոտաց՝

— Չէ՜, քեզանից խոհարար դուրս չի՛ գա...

— Ես քիմիկոս եմ դառնալու...

— Իսկ քո կարծիքով խոհարարությունն ի՞նչ է, աստղագուշակությո՞ւն, թե՞...— Ու լռեց:

Ամբողջ օրը տհաճ զգացումից չկարողացա ազատվել: Երեկոյան, երբ Սեթի պապը աշխատանքից հետո խոհանոցում նստած լուռ ծխում էր, մոտեցա, որ ներողություն խնդրեմ: Լռակյաց, փարավոնի կերպարանքով մեր ծեր խոհարարը մեղմորեն բռնեց թևիցս ու նստեցրեց կողքին:

— Լսի՛ր, տղա՛ս,—ասաց նա,— չգիտեմ, թե ի՞նչ են սովորեցնում ձեզ ձեր դասատուները քիմիայի, ֆիզիկայի դասերին, բայց իմացած լինես, որ խոհարարությունը ևս գիտություն է, այն էլ լուրջ գիտություն: Այստեղ կա և՛ կենսաբանություն, և՛ աշխարհագրություն, և՛ մանավանդ՝ քիմիա ու ֆիզիկա: Դու ուզում ես քիմիկոս դառնալ, ճի՞շտ է: Իսկ գիտե՞ս ինչ է քիմիան...

— Քիմիան... Ֆորմուլաներ են, քիմիական գործարաններում արտադրվող պլաստմասսաներ, ռետին և էլի հազար ու մի սինթետիկ նյութեր...

Սեթի պապը ժպտաց՝

—...Նախ սկսենք մեր այս սովորական խոհանոցի, սովորական իրերի և ձեր քիմիական լաբորատորիայի կահավորանքից: Ի՞նչ ես կարծում, դրանք նման չե՞ն. իհարկե, նման են, ավելի ճիշտ նույնն են: Ինչո՞ւ, որտեղի՞ց են քիմիկոսները վերցրել իրենց լաբորատորիաների սարքավորումները՝ վառարանները, կաթսաները, ամանները... խոհանոցից: Դեռևս անցյալում ալքիմիկոսներին խոհարարներն են տրամադրել այն ամենը, ինչ պետք էր նրանց՝ իրենց փորձերի ժամանակ: Խոհանոցի և քիմիական լաբորատորիայի իրերը ծառայում են միևնույն նպատակին՝ չափել, մանրացնել, տաքացնել ու խառնել... Ստացվում է, որ խոհարարներն էլ մի յուրատեսակ քիմիկոսներ են...

Ես լուռ էի. հարցնում և պատասխանում էր ինքը՝ Սեթի պապը: Խոսում էր դանդաղ, բայց պարզ ու հասկանալի:

— Այ, վերցնենք թեկուզ սննդի մշակման պրոցեսը: Դու հավանաբար նկատել ես, որ կանաչի տեսակի ու որակի մթերքները նույն ժամանակում չեն եփվում: Բանջարեղենը եփվում է ավելի շուտ, քան մսեղենը, ընդորում, թե՛ բանջարեղենի, թե՛ մսեղենի տարբեր տեսակներ եփվում են տարբեր ժամանակամիջոցում: Խոհարար-քիմիկոսը վարպետորեն ջերմամշակման ենթարկելով մթերքը փոխում է նրա որակը՝ համը, հոտը, տեսքը, մեր խոհանոցային այս սովորական կաթսաներում տեղի են ունենում քիմիական երևույթներ՝ ջերմությունից սննդամթերքում եղած սպիտակուցներն ու օսլան ենթարկվում են փոփոխության և դառնում դյուրամարս: Քիմիական ռեակցիաների մեջ հատուկ դեր ունեն կերակրի աղը, կանաչան համեմունքներ, ջուրը, առանց որի տեղի չէր ունենա ջրով քայքայելու ռեակցիան՝ հիդրոլիզը և սպիտակուցները անլուծելի վիճակից լուծելի չէին դառնա, ինչպես նաև մարսողական հյութերի ֆերմենտները արագորեն չէին ներգործի սպիտակուցի և օսլայի մոլեկուլների վրա: Դու նկատե՞լ ես, թե ինչպես ձուկը եփելուց առաջ, ես օծում եմ քացախաթթվով: Ի՞նչ ես կարծում, դա ինչո՞ւ եմ անում, հենց այնպե՞ս: Ո՛չ: Քացախաթթուն նպաստում է սպիտակուցների փափկացմանը, արագացնում է հիդրոլիզը, իսկ հիդրոլիզի պրոցեսն իր հերթին ազդում է ուտելիքի համի և հոտի վրա, մի բան, որ շատ կարևոր է սննդանյութը ախորժելի դարձնելու համար:

«Այ քեզ լռակյաց Սեթի Առաջին,—մտածում էի ես,— ի՞նչ շատախոսն է եղել և ի՞նչ լավ քիմիա գիտի»:

— Ինչն է իմ գործում ամենակարևորը...— հարցնում է և ինքն էլ պատասխանում,— ամենակարևորն այն է, որ ուտելիքը լինի համեղ և ունենա հաճելի հոտ: Իսկ

# ՍԵԹԻ ԱՌԱՋԻՆ ՔԻՄԻԿՈՍԸ

որպեսզի պատրաստածս ճաշը, սալաթը, թխվածքը ունենան համեղի համ ու հոտ, եփման տևողությունից, աղի, ջրի, եփվող սննդամթերքի որոշակի բաղադրամասերից բացի, հարկավոր են նաև համապատասխան քանակությամբ համեմունքներ: Համեմունքների օգտագործման հարցում, վաղ ժամանակներից սկսած, մեծ հմտություն և ճաշակ են հանդես բերել հատկապես Միջին Ասիայի և Արևելքի ժողովուրդները:

— Իսկ մի՞թե այդքան կարևոր են համեմունքները,— ասում եմ ես, մի բան ասած լինելու համար:

— Հապա ինչպե՞ս, տղա՛ս: Չէ՞ որ համեմունքները պարունակում են օրգանիզմի համար կարևոր այնպիսի նյութեր, որոնք կամ չկան, կամ էլ չնչին քանակությամբ են պարունակվում սննդամթերքներում: Հապա մտածի՛ր, ի՞նչ տեղի կունենար, եթե մարդը կորցներ համի և հոտի զգացողությունը: Կխախտվեր մարսողությունը, օրգանիզմի համար անհրաժեշտ նյութերը չէին յուրացվի... մարդու ֆիզիկական վիճակը կազդեր նրա հոգեկանի վրա: Տեսնո՞ւմ ես, թե որքան հեռուն կարելի է գնալ՝ խորանալով մեր այս սովորական խոհանոցային գործերի մեջ: Մարդը դեռ անհիշելի ժամանակներից սեփական փորձով գիտե, թե ինչ է նշանակում՝ աղի կամ շաքարի պակասը: Շաքարը լինելով հաճելի, դյուրամարս, բարձր կալորիականությամբ օժտված սննդամթերք, օրգանիզմում առաջացնում է այնպիսի մի նյութ, ինչպիսին է գլիկոգենը: Իսկ գլիկոգենը սնում է մեր ուղեղը, սիրտը, մկանները: Շաքարը արյան բաղադրիչ մասն է, մկանային էներգիայի հիմնական աղբյուրը: Նա է ապահովում մեր գլխուղեղի բջիջների գործունեությունը:

— Իսկ ի՞նչ են օգտագործել մարդիկ հազարամյակներ, հազարամյակներ առաջ, չէ՞ որ այն ժամանակ շաքար, շաքարի արտադրություն չի եղել:

— Եղել է, ինչպե՞ս չէ: Հապա մրգե՞րը, հատապտուղնե՞րը, չէ՞ որ նրանք էլ են շաքար պարունակում: Միայն թե այնտեղ շաքարը հանդես է գալիս ոչ թե սախարոզայի, այլ պտղաշաքարի՝ ֆրուկտոզայի ձևով: Դրանով հատկապես շատ է հարուստ մեղրը: Իսկ վայրի մեղրի հայթայթմամբ զբաղվել են ոչ միայն քարանձավաբնակ արջերը, այլև նրանց հնարամիտ դրացիները՝ նախնադարի մարդիկ: Դրանից հետո անցել են բազմաթիվ հազարամյակներ. մարդը սեփական կենսափորձով ճանաչել է բուսական և կենդանական աշխարհը, զատել օգտակարը վնասակարից, սննդարարը թունավորից և այդ ամենի հիման վրա ստեղծել է այն, ինչ այսօր անվանում ենք խոհանոց, որը քիմիական յուրատեսակ լաբորատորիա է: Իհարկե, յուրաքանչյուր ցեղախումբ, ժողովուրդ, ազգ, ունի իր սիրելի կերակուրը, իր խոհանոցը, սակայն բոլորն էլ իրենց սկզբունքով նույնն են, բոլորն էլ ծառայում են գոյության, առողջության պահպանմանը: Այժմ սննդամթերքների պատրաստման գործին մասնակցում են նաև գիտնականներ՝ քիմիկոսներ, ֆիզիկոսներ, միկրոկենսաբաններ: Ցավալի է, որ ոմանք խուսափում են խոհանոցային գործերից, խոհարարությունը համարում ինչ-որ երկրորդական, ձանձրալի, սև աշխատանք: Մանավանդ տղաները: Դա ձեզ համար վիրավորական գործ եք համարում: Ես խոհարար եմ, պարծենում եմ դրանով. ո՞վ չգիտե, որ հասարակական սննդի օբյեկտներում լավագույն խոհարարները տղամարդիկ են...

Սեթի պապը մի պահ լռեց, նայեց աչքերիս և ինչ-որ բան հիշելով, արագ վեր կացավ ու հեռացավ: Այդ ժամանակ ո՛չ նրա և ո՛չ էլ իմ մտքով կանցներ, որ տարիներ անց, նույն խոհանոցում ես պետք է փոխարինեի նրան, աշխատելով գերազանցել Լռակյաց Սեթի Առաջինի համեղ կերակուրները:



ԴՐՈՒԺԻՆԱՆԵՐՈՒՄ



ԵՎ ՋՈԿԱՏՆԵՐՈՒՄ

*Կոմունիստներից օրինակ ենք վերցնում*

# ՃԱՆԱՊԱՐՀԸ ԴԱՇՏ Է ՏԱՆՈՒՄ

Հոկտեմբերի 2-ին, դասերից հետո, Հոկտեմբերյանի շրջանի Նալբանդյան գյուղի այգիները տանող ճանապարհով քայլում էին դպրոցականների երկու խումբ: Առաջին խմբի անդամները կոմերիտական կրծքանշաններ էին կրում, երկրորդ խմբինը՝ պիոներական վզկապներ: Բարդիներով եզերված ճանապարհը կորավ այգիների մեջ, և բացվեց դաշտերի հեռաստանը:

— Գեղեցի՜կ, երեխաներ, եկա՜նք,— ձայնեց կոմերիտական երիտասարդական օղակի աղջիկներից մեկը:

Գյուղի դպրոցի Օլեգ Կոշևոյի անվան ջոկատը որոշել էր համամիութենական տողանն անցկացնել «աշխատանքային ճակատում»՝ այգիներում, իրենց արտադրության ջոկատավարի՝ Գեղեցիկ Կարապետյանի մասնակցությամբ: Կոլտնտեսության նախագահ ընկեր Սմբատյանը այդ օրը դաշտ էր եկել՝ կրծքին Լենինի շքանշան: Կոմերիտական-երիտասարդական օղակի աղջիկներից շատերի կրծքին նույնպես շքանշաններ՝ ու մեդալներ կային: Իսկ հերոսների օղակի հրամանատարի՝ Գեղեցիկ Կարապետյանի կրծքին շողում էր ոսկե աստղը, և ՍՍՀՄ Գերագույն սովետի դեպուտատի նշանը: Հնչեցին շեփորները, և այգեմիջյան բացատում տողանի կանգնեցին երեք «ջոկատներ»: «Պիոներական տողանի» կանգնեցին նաև երիտասարդ այգեգործները:

— Մեր օղակը հնգամյակի առաջադրանքները կատարել է դեռևս 1974 թվականին,— զեկուցեցին շեֆերը,— հիմա աշխատում ենք 1977 թվականի հաշվին:

— Մենք միշտ ձեզանից օրինակ ենք վերցրել,— ասացին իններորդ դասարանցիները:— «Ուսման մեջ և աշխատանքում՝ գերազանց», ահա մեր նշանաբանը:

Եվ Ռուզաննա Առաքելյանը ավագ քարեկամներին հանձնեց «Աշխատանքային զեկույցների հուշամատյանը»: Այնտեղ նշված էր, որ իրենք հինգ տարի շարունակ բարձր են պահել Օլեգ Կոշևոյի անվան ջոկատի պատիվը, որ միշտ աշխատել են կոլտնտեսության դաշտերում, որ չեն տրվել ոչ մի երկտարեցի, անցել են հարյուր տոկոսի առաջադիմության, որ «Միշտ պատրաստ» երթում կատարած լավ գործերի համար արժանացել են ՀԼԿԵՄ Կենտկոմի պատվոգրի: Ջոկատի հրամանատարը՝ Ռուզան Առաքելյանը, պարգևատրվել է «Արտեկի» ուղեգրով...

— Եվ ահա այսօր բերել ենք մեր հերթափոխող ջոկատին՝ կոշևոյցիների ամենափոքրիկ սերընդին:

Դպրոցի ավագ ջոկատավար ընկեր Արևիկը ասաց, որ ջոկատն արդեն «Միլիոն՝ հայրենիքին» օպերացիայի գծով առաջին տեղում է ընթանում: Հավաքել է կես տոննա թղթի թափոն և մեկ տոննա մետաղի ջարդոն: «Ապրի՛ր, գի՛րք» օպերացիայում նա նույնպես լավ օրինակ է ցույց տվել. դասագրքերը մաքուր վիճակում են հանձնել 3-րդ դասարանցիներին: Վերցրել են Հայրենական պատերազմում զոհվածներին նվիրված հուշարձանի շեֆությունը: Դասարանը իր ձեռքում է պահում դպրոցի սահմանած «Օրինակելի կարգապահության և մաքրության համար» հուշադրոշը...

Այնուհետև Գեղեցիկ Կարապետյանը իր փոքրիկ բարեկամներին հանձնեց աշխատանքային անձնագրեր: Յուրաքանչյուր պիոներ այնտեղ կգրի իր կատարած գործերի, նախաձեռնությունների մասին: Կոշևոյցիները հերոսներին հեռուներում չեն փնտրում. հերոսներն իրենց կողքին են, իրենց հայրենի գյուղում: Գեղեցիկ Կարապետյանը փառաբանված հերոս է: «Ուզում ենք լինել Գեղեցիկի նման»,— ջոկատի հասցեով ստացվող նամակներում միշտ այսպիսի տողեր կան:

Երբ տողանն ավարտվեց, խաղողի այգիներում ձգվեց երեք շարք... Երեխաներն աշխատում էին ավագ ընկերների հետ կողք-կողքի: Գեղեցիկ Կարապետյանը՝ հողի փառապանծ հերոսուհին և նրա փոքրիկ բարեկամները միասին կիսում էին աշխատանքի հրճվանքը:

ԼՅՈՒԴՎԻԳ ԿԱՐԱՊԵՏՅԱՆ



# ՔՍԱՆԵՐՈՐԴ ԴԱՐԻ ՌՈԲԻՆԶՈՆՆԵՐԸ

*Ի. ՑԻԳԵԼՆԻՑԿԻ*

Ամեն տարի, խոր աշնանը, Լենինգրադի ծովային նավահանգստից ճանապարհ են ընկնում շինանյութերով, վառելիքով, գիտական սարքավորումներով ու պարենով բեռնված նավեր։ Ուղևորները մի ամբողջ տարի պետք է ապրեն և աշխատեն հեռավոր Անտարկտիդայում։ Ովքե՞ր են նրանք և ի՞նչ են անելու ամայի մայր ցամաքում, համատարած սառցի անհյուրընկալ աշխարհում։

## ՕԴԱՅԻՆ ՏԱՐԵՐՔԻ ՍԱՆՁԱՀԱՐՈՂՆԵՐԸ

Գիտարշավի ամենամարդաշատ ջոկատներից մեկը օդերևութաբաններինն է։ Նրանք են, որ պետք է եղանակի մասին ճշգրիտ և հուսալի կանխատեսում հաղորդեն Հարավային օվկիանոսում աշխատող կետորսական և ձկնորսական բազմաթիվ նավերին։ Պետք է պարբերաբար չափեն օդի ջերմաստիճանը, ճնշումը, խոնավությունը, քամու ուղղությունն ու արագությունը։ Կա նաև այլ, ոչ պակաս բարդ խնդիր՝ իմանալ, թե այդ վիթխարի «սառնարանը» ինչպես է ազդում երկրագնդի կլիմայի վրա։ Դրա համար նրանք չափում են արևից եկող ջերմության քանակը և որոշում, թե դրա որ մասն է ծախսվում սառույցի և ձյան հալման վրա և որ մասը անդրադառնում մթնոլորտ, օվկիանոսից քամու բերած խոնավության որ մասն է նստում սառցե գմբեթին՝ որպես ձյուն ու սառույց և որքան ծրնհալի ջուր է հոսում դեպի օվկիանոս։

Այդ բոլորը որոշելու համար օդերևութաբաններին օգնության են գալիս խելացի և հնարամիտ ավտոմատները։ Հեռվից կառավարվող սարքերը օրական 8 անգամ տվյալներ են հաղորդում երկրի մակերեսից և 2 անգամ՝ 30—40 կմ բարձրությունից։ Օդերևութաբանական հրթիռները միրճվում են երկինք՝ մինչև 100 կմ, իսկ ավելի վերևից տեղեկություն են տալիս արհեստական արբանյակները։ Տվյալները ռադիոյով հաղորդվում են եղանակի հետազոտման կենտրոն։ Այնտեղ ըստ ցիկլոնների և անտիցիկլոնների որոշում են, թե հարավային կիսագնդի տվյալ կետում տվյալ ժամկետում ինչպիսի եղանակ է սպասվում։

Իսկ ի՞նչ բան է ցիկլոնը։ Դա օդային վիթխարի մրրկապտույտ է, որ խոյանում է մի քանի կիլոմետր բարձրությամբ։ Մեկը մյուսի ետևից ցիկլոնները սուրում են բարեխառն գոտուց դեպի Անտարկտիդայի ափերը։ Բախվելով մայր ցամաքի սառցե բարձր պատնեշին, սկսում են պտտվել ափերով մեկ։ Այնտեղ, ուր ափը ցածր է, ցիկլոնը խուժում է մինչև Հարավային բևեռ, ավլելով-տանելով ձյունափոշին։ Ցիկլոններն անցնում են իրենց նախասփրած արահետներով։ Եղանակը կանխագուշակելու համար պետք է հաշվարկել, թե որ արահետով և ինչ արագությամբ է անցնելու ցիկլոնը։ Դա անում է էլեկտրոնային հաշվիչ մեքենան և նախազգուշացնում մոտեցող փոթորկի մասին։

## ՍԱՌՑԵ ԳՐՔԻ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԸ

Այս գիրքը գրել է բնությունն ինքը։ Մայր ցամաքի ծածկող սառցե զրահը, իրոք, նման է մի տարեգրքի, որի վրա գրի է առնված Անտարկտիդայի ողջ պատմությունը։ Թերթել նրա բազմատոննա էջերը՝ այնքան էլ հեշտ չէ։ Այդ արվեստին տիրապետում են սառցաբանները (գլյացիոլոգ)։

Նրանց առաջին գործը եղավ սառցածածկույթի հաստությունը որոշելը։ Դրա համար սահնակա-տրակտորային գնացքները և ինքնաթիռները բազմիցս կտրեցին անցան մայր ցամաքը տարբեր ուղղություններով։ Չափեցին սառցադաշտի գմբեթի հաստությունը՝ ըստ ձայնային և ռադիոալիքների տարածման արագության։

Պարզվեց, որ ներքին շերտերը չորսկիլոմետրանոց սառցի ահռելի ծանրության տակ ձեռք են բերում սառցի նոր հատկանիշ՝ հոսունություն։ Ընդարձակ սառցյա հովիտներով ու կիրճերով սառցադաշտը հոսում է դեպի ծով։ Որտեղ որ հունը թեք է, հոսանքի արագությունը տարեկան հասնում է 500—600 մետրի։ Սառցի հոսունությունն անպայման հաշվի է առնվում բևեռային կայաններ կառուցելիս, հակառակ դեպքում դրանք մի քանի տարում կարող են սահել ընկնել ծովը։

Անտարկտիդան ձգտում է ազատվել իրեն ճնշող անտանելի բեռից՝ սառցի ավելցուկը ծովն է նետում այսբերգների (սառցասարերի) ձևով։ Սակայն այդ կորուստը շուտով փոխհատուցվում է տեղումներով (ձյուն, եղյամ, սառցաբյուրեղներ)։ Կենտրոնում, որտեղ Վոստոկ կայանն է, հազվադեպ է ձյուն գալիս։ Սակայն կայանը մշտապես պարուրված է լինում սառցաբյուրեղների մշուշով, որը, նստելով, տարեկան տասը սանտիմետրանոց շերտ է գոյացնում։

Սառցադաշտի տարիքը որոշում են տարեկան շերտերով, այնպես ինչպես ծառերի տարիքը՝ ըստ տարեկան օղակների։ Հնագույն շերտերում պահպանված է ծաղկափոշին այնպիսի բույսերի, որոնք վաղուց անհետացել են երկրի երեսից։ Հրաբուխների արտավիժումներն էլ իրենց հետքն են թողել հրաբխային փոշու ձևով։ Շատ բան կարող են



պատմել սառցե գրքի էջերը, եթե դրանք ընթերցվեն հանգամանորեն։

Սառցաբանները Անտարկտիդա են բերել հորատիչ հարմարանքներ. սղոցում են, ծակում, նըմուշներ վերցնում, ուսումնասիրում դրանց բաղադրությունը և մեխանիկական հատկանիշները՝ ամրությունը, ճկունությունը, առաձգականությունը, որ նկատի են առնում օդանավակայանի տեղ ընտրելիս։

Սահնակա-թրթուրային գնացքները սառցահատ նավից պարեն և սարքավորում են տեղափոխում Վոստոկ կայանը։ Սառցաբանները ամբողջ ուղին ուսումնասիրում են օդից և քարտեզի վրա նշում վըտանգավոր ձորերն ու սառցաճեղքերը, որոնք սովորաբար քողարկված են լինում ձյունե «կամուրջներով»։

## ՃԵՐՄԱԿ ԽԱԼԱԹՈՎ ԲԵՎԵՌԱԽՈՒՅԶՆԵՐԸ

Բժիշկները պարտադիր մասնակիցներն են յուրաքանչյուր բևեռային գիտարշավի, և տարեցտարի նրանց ջոկատը բազմանում է։ Կարող է թվալ, թե բժիշկներն այնտեղ քիչ անելիք ունեն։ Չէ՞ որ բևեռախույզներն առողջ մարդիկ են։ Մրսածությունը, որ մյուս մայր ցամաքներում կարող է մարդուն երկար ժամանակով անկողնին գամել, Անտարկտիդայում բուժվում է առանց դեղորայքի՝ սովորական հանգստով։ Իսկ գրիպով ոչ ոք չի հիվանդանում. այնտեղ չկան միկրոբներ և վիրուսներ։ Ուրեմն ինչո՞վ է զբաղվելու բուժանձնակազմը՝ վիրաբույժից մինչև հոգեբույժը։

Պարզվում է, որ ճերմակ խալաթավոր մարդիկ Անտարկտիդայում զբաղված են շատ կարևոր և անհրաժեշտ հետազոտություններով։ Գիտարշավի մասնակիցները երկնակի անգամ կտրում-անցնում են երկրի բոլոր կլիմայական գոտիները։ Փոխվում են տարվա եղանակները, կլիմայական պայմանները, ժամային գոտիները։ Կտրուկ փոփոխվում է օրգանիզմի տարիներով մշակված կենսաբանական ռիթմը։ Նույնիսկ լիակատար առողջ մարդու համար այնքան էլ հեշտ չէ ընտելանալ կես տարի տևող բևեռային գիշերներին, բարձր-լեռնային պայմաններին, զարհուրելի ցրտին։ Վոստոկ կայանում 4 կմ բարձրության վրա օդի ջերմաստիճանը ամռանը չի բարձրանում —25°-ից, իսկ ձմռանը իջնում է մինչև —85°-ի։

Մինչև մեկնելը, մասնակիցներից յուրաքանչյուրը բժշկական քննության է ենթարկվում, որպեսզի վերադառնալուց հետո պարզվի, թե ինչ փոփոխության է ենթարկվել օրգանիզմը բևեռային պայմաններում։

Սառցի և ձյան ջուրը զուրկ է օրգանիզմի համար անհրաժեշտ աղերից։ Բժիշկները հետևում են խմելու ջրի բաղադրությանը և դրա մեջ ավելացնում անհրաժեշտ աղերն ու միկրոտարրերը։ Կան մի շարք, հատկապես մարտողության համար օգտակար մանրէներ, որոնք գոյություն չունեն Անտարկտիդայում։ Ո՞ր տեսակներից և ինչպես բազմացնել—դա պարզում են բժիշկները։

Իսկ ինչպե՞ս պաշտպանվել գերցածր ջերմաստիճանի և մրրկային քամիների ազդեցությունից, ի՞նչ զգեստ հագնել։ Հագուստների շատ տեսակներ, որ բևեռախույզներն օգտագործում են Արկտիկայում, անպետք դուրս եկան Անտարկտիդայում։ Այստեղ էլ օգնության են գալիս բժիշկները։ Նրանք արդեն փորձարկել են հատուկ զգեստներ՝ էլեկտրաջեռուցիչով, դիմակներ և կոշիկ։

Դա դեռ այն բոլորը չէ, որով զբաղվում են բըժիշկները բևեռում։ Նրանք ուսումնասիրում են այն պրոբլեմները, որ կապված են ամայի սառցաշխարհի կայաններում կամ բատիսկաֆում (գունդ, որով իջնում են ծովի հատակը) ապրելու և աշխատելու կենսապայմանների հետ։ Կայանները, որոնք գտնըվում են մայր ցամաքի խորքերում, աշխարհից կտրված, փոքր կոլեկտիվներով, կարող են ծառայել իբրև հոգեբանական համատեղելիության ուսումնասիրման մի լաբորատորիա։ Այնտեղ ավելի ակնհայտ են դրսևորվում մարդկանց լավ ու վատ գծերը՝ փոխըմբռնումը, ազնվությունը, սկզբունքայնությունը, դիմացկունությունը և ընդհակառակը։ Ով քննություն է բռնում նաև այդ առումով, նա է դառնում իսկական բևեռախույզ։

## ԲԵՎԵՌԱՅԻՆ ՋԿՆԱԲԱՆՆԵՐԸ

Համաշխարհային օվկիանոսի ամենաանբավարար ուսումնասիրված տեղամասը Հարավային բևեռի շրջանն է։ Ափերի մոտ համարյա կլոր տարին ծովը ծածկված է սառույցով, և ամառային նավարկությունը տևում է 2—3 ամիս։ Բայց այդ կարճ ժամանակամիջոցում էլ կարելի է տեսնել, թե որքան հարուստ ու բազմազան է կյանքը մերձափնյա ջրերում։ Այստեղ կենդանիների տեսակները սահմանափակ են, բայց քանակը շատ մեծ է։ Եվ բոլորին, սկսած փոքրիկ ծովածիծառից և վերջացրած կետերով, կերակրում է օվկիանոսը։ Որքա՜ն պետք է հարուստ լինեն Անտարկտիդան եզերող ծովերը։ Ուսումնասիրել այնտեղ գոյություն ունեցող կենդանական աշխարհը և թեկուզ մոտավորապես որոշել սննդի այն պաշարները, որ պահված են ջրերի խորքում, դա ջրակենսաբանների խնդիրն է։ Իսկ այստեղի ջրերում աշխատելը անհամեմատ դժվար է. ջրի ջերմաստիճանը 0°-ից +2° է, հեշտ չէ սառցի ճեղքով անդունդ սուզվելը։

Առաջին իսկ ստորջրյա ուսումնասիրությունները տվեցին սպասածից շատ ավելի արդյունքներ։ Ջրասույզների խմբի ղեկավար, լենինգրադցի Մ.

*«Ամեն ոք պետք է հասկանա և սիրի երաժշտությունը»*

# ՄՈՐԻՍ ՌԱՎԵԼ

(Ծննդյան 100-ամյակի առթիվ)



*«Բոլորը չէ, որ հայտնի երաժիշտ են դառնում: Բայց ամեն ոք պետք է հասկանա և սիրի երաժշտությունը»,— այդպես էր մտածում ֆրանսիացի ինժեներ Ժոզեֆ Ռավելը՝ դաշնամուրի դասատու վարձելով իր 6 տարեկան որդու՝ Մորիսի համար: Իհարկե, հայրը չէր կարող ենթադրել, որ երեխան, մեծանալով, աշխարհի ճանաչված և սիրված կոմպոզիտորներից է դառնալու: Բայց մի հարցում նա չսխալվեց. երաժշտությունը իրոք լուսավորեց նրա որդու ողջ կյանքը:*

*Մորիս Ռավելի գեղարվեստական հայացքները ձևավորվեցին այնպիսի մի շրջանում, երբ Ֆրանսիայի առավել առաջադեմ արվեստագետները, ընդվզելով անցյալի հնացած ավանդույթների դեմ, նոր ուղի էին հարթում արվեստում: Նկարիչներից շատերը (Կլոդ Մոնե, Կամիլ Պիսարո, Ալֆրեդ Սիսլեյ և ուրիշներ), իրենց հայացքը ուղղեցին դեպի բնությունը, ոգեշնչվեցին նրա հավերժ թարմ պատկերներով, չընխամրող գույներով, աշխատեցին իրենց կտավներում դրոշմել ըզգացմունքի անմիջականությունը, անցողիկ ակնթարթային տպավորությունները: Պատահական չէ, որ այս ուղղության ներկայացուցիչներին «իմպրեսիոնիստ» անվանեցին (ֆրանսերեն «իմպրեսիոն» նշանակում է՝ «տպավորություն»):*

*Իսկ երաժշտությո՞ւնը: Չէ՞ որ նրան ևս հասանելի է և՛ անընդհատ փոփոխվող տրամադրությունների հոսքը, և՛ լուսաստվերի քմահաճ խաղը... Եվ մի՞թե յուրատեսակ «ներկեր» չեն հարմոնիկ թարմ համահնչյունները, տարբեր գործիքների այլազան երանգները, որոնք ի մի գալով սիմֆոնիկ նվագախմբում, կարող են մրցել ուզածդ գեղանկարչական պատկերի հետ:*

Պրոպը պատմում է իր առաջին սուզարկման մասին՝ Դեյվիսի ծովում, Միրնի աստղադիտարանի շրջանում. «Ջուրը թվում էր անհավատալիորեն թափանցիկ: Սառցի տակ կատարյալ լույս էր, աղջամուղջի ոչ մի նշույլ, շուրջ բոլորը լցված էր մեղմ, կապտականաչավուն լույսով: Մանր կենդանիների քանակը անպատմելի էր, չկար սակայն շարժման ոչ մի նշան: Դա ոչ թե ծով էր, այլ անշարժ ցուցանմուշների ֆանտաստիկ թանգարան: Առաջին որսը, որ հազիվ էր տեղավորվում մեծ դույլի մեջ, ծիրանագույն ոզնիներն էին, վառ կարմիր և մանուշակագույն ծովաստղերը, համարյա մեկ մետրանոց ճիճուները, բազմագույն ակտինիաները, փարդագույն և դեղին կորալների փնջերը...»

Պարզվեց, որ այստեղ երկու-երեք անգամ ավելի շատ կենդանիներ կան, քան Հյուսիսային բևեռի շրջակա ծովերում: Հավանաբար այդ առատության պատճառը այստեղի ջրերի՝ թթվածնով առավել հագեցած լինելն է: Կենդանական և բուսական աշխարհի հարստությամբ այս ծովերը նման են արևադարձային գոտու ծովերին:

Ջրասույզներն ու ջրակենսաբաններն իրենց հետազոտություններով օգնեցին նաև սառցաբաններին: Չէ՞ որ ծովային սառույցների կազմավորման և քայքայման պրոցեսները տեղի են ունենում նաև ընդերքում, իսկ նավերով և ինքնաթիռներով դա տեսնել հնարավոր չէր:

## ԽԻԶԱԽ ԳԱՆՁԱԽՈՒՅԶՆԵՐԸ

Սառցե զրահն արգելում է մերձենալ Անտարկտիդայի ընդերքի հարստություններին: Դրա համար էլ Հարավային բևեռի երկրաբանական կառուցվածքը ավելի վատ է ուսումնասիրված, քան մյուս ցամաքներինը: Սառցադաշտը ծածկում է ցամաքի 95%-ը, մնացած 5%-ը քարալեռներ են: Հողմահարվելով, աճռեփ ժայռաբեկորները փշրվում են և գլորվելով «հովիտները», ստեղծում քարե «օազիսներ», որոնք պաշտպանվելով բարձր լեռնաշղթաներով, տեղումներից զերծ են մնում: Այդ «օազիսներում» նույնիսկ լճակներ կան: Բուսական աշխարհը կազմված է միայն մամուռից և քարաքոսից:

Հանքանյութերից առայժմ հայտնի են արևելյան մասում՝ ածուխ, որ գետնի մակերեսին է և բևեռախույզներն օգտագործում են ջեռուցման համար, կան նաև՝ մարգանեց, տիտան, մոլիբդեն, նիկել, ուրան, արծաթ, ոսկի, գրաֆիտ, բյուրեղապակի: Արևմտյան մասում հայտնաբերվել են՝ արճիճ, ցինկ, նիկել, կոբալտ, պղինձ, ոսկի: Ենթադրում են, որ պետք է նաև նավթ լինի:

Ծանր է բևեռախույզի աշխատանքը: Սակայն բնության գաղտնիքները ճանաչելու և մարդկության ծառայեցնելու մեծ ձգտումի առաջ չի կարող լինել անհաղթահարելի որևէ պատնեշ: Այդ գիտակցությամբ են հեռու-հեռավոր սառցաշխարհը մեկնում անձնուրաց բևեռախույզները:

Երաժշտության «իմպրեսիոնիստական», «գունային» հնարավորությունները հիանալի զգաց և վերհանեց դեռևս Ռավելի ավագ ժամանակակից կոմպոզիտոր Կլոդ Դեբյուսին, որին իրավամբ անվանեցին երաժշտական իմպրեսիոնիզմի հայր:

Նույն ուղիով գնաց և Մորիս Ռավելը: Փարիզի կոնսերվատորիան դեռ նոր ավարտած, նա հանդես եկավ «Ջրի խաղը» պիեսով, որը դարձավ իմպրեսիոնիստական դաշնամուրային գրականության հիմնաքարը: Դա Փարիզի հոյակապ շատրվանների երաժշտական ընդհանրացված պատկերն է: Ջրի չլռող կարկաչյունը, շիթերի փայլատակումը արևի ճառագայթների ներքո, բյուրավոր ջրացայտերի կայտառ խաղը, զարմանալիորեն հավաստի և գունեղ մարմնավորում ստացան Ռավելի երաժշտության մեջ: «Ջրի խաղին» հետևեց «Իսպանական ռապսոդիան» սիմֆոնիկ նվագախմբի համար: Ռավելի մայրը իսպանուհի էր, և Իսպանիայի արվեստը, ինչպես Ֆրանսիայինը, հարազատ դարձավ կոմպոզիտորին, սնեց նրա ստեղծագործությունը:

Առաջին համաշխարհային պատերազմի տարիներին հայրենասեր կոմպոզիտորը իբրև կամավոր մեկնեց ռազմաճակատ, աշխատելով որպես բեռնատար ավտոմեքենայի վարորդ:

Ռազմաճակատում զոհվեցին նրա ընկերներից շատերը, բազմաթիվ արվեստագետներ հաշմանդամ դարձան: Պատերազմում աջ ձեռքը կորցրեց ավստրիացի դաշնակահար Պաուլ Վիտգենշտեյնը: Ռավելը նրա պատվերով գրեց հատուկ կոնցերտ՝ ձախ ձեռքով կատարելու համար: «Ձախ ձեռքի կոնցերտի» խստաշունչ, ողբերգական երաժշտությունը համահնչյուն էր ետպատերազմյան շրջանի տրամադրություններին:

Ռավելին համաշխարհային հռչակ բերեց «Բոլերո» սիմֆոնիկ ստեղծագործությունը (ծրագրվել է որպես երաժշտություն՝ բալետային ներկայացման համար): Բոլերոն իսպանական ժողովրդական պարի անուն է: Բայց կոմպոզիտորը անհանգիստ, տագնապալի երանգ հաղորդեց երաժշտությանը: Անջնջելի տպավորություն է գործում լարվածության և դինամիկայի անընդմեջ աճը՝ հազիվ լսելի շշնջյունից մինչև ամբողջ նվագախմբի որոտընդոստ հնչեղությունը: Զարգացման մեջ շարունակաբար ներգրավվում են նորանոր գործիքներ ու գործիքային խմբեր, որոնք և նոր հնչերանգ են հաղորդում թեմատիկ անփոփոխ նյութին և նպաստում հնչեղության աստիճանական ուժեղացմանը: Բարձրակետին հասնելով, երաժշտությունը անսպասելիորեն ընդհատվում է, ստեղծելով աղետի, կործանման տպավորություն:

Ռավելը սիրում էր երեխաներին և գեղեցիկ գործեր էր հորինում նաև նրանց համար: «Իմ մայր-դայակը» դաշնամուրային սյուիտը, որտեղ վերակենդանանում են մանկական հայտնի հեքիաթների կերպարները («Քնած գեղեցկուհին», «Մատնաչափիկը» և այլն), «Մանուկը և հրաշքը» օպերան, որտեղ խոսվում է չար երեխայի մասին, որը փչացնում է շրջապատի իրերը և չարչարում տնային կենդանիներին, սակայն զոհերը ապստամբում են երեխայի դեմ, և նա խորապես զղջում է իր արարքի համար...

Ռավելի կյանքն ընդհատվեց 1937 թվականին: Ինչպես ամեն մի իսկական, մեծ արվեստագետ, նա շարունակում է ապրել իր ստեղծագործություններում:

*ԱՐՄԵՆ ԲՈՒԴԱՂՅԱՆ*

# ՀԻՄԱՐՇԵՆԻ ԻՄԱՍՏՈՒՆՆԵՐԸ

*ԱՎԳՈՒՍՏ ԿՈՊԻՇ*

**Հիմարշենի բնակիչները**
**Համեստ են ու բարի,**
**Ապրում են մեծ ծովի ափին**
**Ուղիղ հազար տարի:**

**Մի օր նրանք ինը հոգով**
**Ծովն են ուրախ մտնում,**
**Ծովն հանգիստ էր ու անխռով,**
**Օրն էր դանդաղ մթնում:**

**Հանկարծ երկինքն է մռայլվում,**
**Հուր կայծակն է շողում,**
**Նայում է մեկն ալիքներին,**
**Ահից սիրտն է դողում:**



*Նկ. ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ*

**— Ինձ թվում է մեզնից մեկը**
**Խեղդվել է ծովում,—**
**Ասում է նա ու՝ մե՛կ, երկո՛ւ...**
**Մինչև ինը հաշվում:**

**Այնքան համեստ ու բարի են**
**Ու մի քիչ էլ՝ անխելք,**
**Որ այս մարդիկ իրենց մասին**
**Չեն մտածում երբեք:**

**Երկրորդն էլ է նայում ափին,**
**Ահից մի կողմ քաշվում,**
**Նա էլ, իրավ, շատ էր համեստ,**
**Ինքն իրեն չի հաշվում:**




## ԳԱՅԼԸ ՈՉԽԱՐԻ ՀՈՏՈՒՄ

Եթե անհապաղ միջոցներ չձեռնարկվեն, ապա ամերիկյան պրերիայի (սնահողային շրջան Հյուս. Ամերիկայում) գայլերը կարճ ժամանակաշրջանում գլխովին կոչնչացվեն: Մի խումբ կենդանաբաններ նպատակադրվել են պահպանել գայլերի գլխաքանակը:



Դրա համար անհրաժեշտ է հնարավորություն տալ գայլերին, որ իրենք իրենց «հացը» վաստակեն: Գիտնականները գայլերի համար հարմար աշխատանք են գտել. պահպանել ոչխարի հոտը: Բայց դրա համար անհրաժեշտ է գայլերին ոչ միայն վարժեցնել «աշխատանքի», այլև ոչխարի մսի նկատմամբ կայուն հակակրանք պատվաստել, մի բան, որ պետք է կատարվի գիտական եղանակով: Մի որոշ ժամանակ գայլերը կստանան կերակրի աղով գերհագեցած ոչխարի միս: Նման հյուրասիրությունը գիշատիչների մոտ ուժեղ սրտախառնոց է առաջացնում, մի քանի անգամ այդպիսի միս ուտելուց հետո, գայլերը վճռականորեն կհրաժարվեն դրանից:

## ՄԱՀԱՑԱԾՆԵՐԻ ՎԵՐԱԿԵՆԴԱՆԱՑՈՒՄ

Լեռնային ապարների ճեղքվածքների տարբեր խորություններում հավիտենական քնով նիրհել են ծողիկաձև մանրէները. մի մասը «ընդամենը» 10 հազար տարի, մյուսները՝ միլիոն:

1974 թվականին նրանց հայտնաբերեցին Ամերիկայի Դանա-Պոհտիում գտնվող Չարլզ Դարվինի անվան գիտա-հետազոտական ինստիտուտի կենսաբանները: Գիտնականներն իրենց «հսկողության տակ» գտնվողներին մանրէազերծված փորձանոթներով տեղափոխեցին լաբորատորիա և երանելի պայմաններ ստեղծեցին նրանց համար: Շուտով սննդարար միջավայրում կյանքը սկսեց եռալ. մանրէները բազմացան, հրաքուխի գագաթներ հիշեցնող շարասյուներ կառուցեցին:

Մի խոսքով, միլիոն տարին սահման չէ մանրադիտակային «քնած գեղեցկուհու» համար: Այս եզրակացությունը կարևոր է ոչ միայն տեսականորեն: Այն գրավեց նաև երիտասարդ՝ տարակենսաբանության ներկայացուցիչների ուշադրությունը, որոնք ուսումնասիրում են երկրագնդից դուրս կյանքի գոյության հնարավորությունը, ասենք, գիսաստղերի տիեզերական մանրագույն փոշու մեջ կամ կլիմայական կտրուկ փո-



փոխությունների ենթարկվող մոլորակներում: Կարո՞ղ են արդյոք ժամանակավորապես այնտեղ «թաքնվել», իսկ երբ պայմանները բարելավվեն՝ հարություն առնել ինչ-որ կենդանի արարածներ:

Տուն դառնալիս՝ ինք ճոգով
Հիմարշենցիք տարեց
Տեսնում են մի օտարական
Ճանապարհին իրենց:

— Ո՜վ Մարդ, ասա՛, ինք ճոգով
Հենց նոր մտանք ջուրը,
Թեև մեզնից մարդ չի խեղդվել,
Բայց իններորդն ո՞ւր է:

Լաց են լինում ու աղերսում,
Պոկում մազերն արձակ,
Չէին տեսել իրենց կյանքում
Այսպիսի մեծ փորձանք:

— Դուք համեստ եք,—մարդն է ասում,—
Բարի անուն տենք,
Թաղեք քթերդ ավազի մեջ,
Փոսերն հաշվեք մեկ-մեկ:

Թարգմանությունը ՀԵՆՐԻԿ ՍԵՎԱՆԻ

## ՊՐՈՖԵՍՈՐ ՏՐՈՅԱՆՈՎՍԿՈՒ ՍՈՒՆԿԸ

Լեհաստանի Լյուբլին քաղաքի գիտնականները պրոֆեսոր Ե. Տրոյանովսկու գլխավորությամբ հայտնաբերել են սնկի մի տեսակ, որը ընդունակ է սնվել թղթի արտադրությունից դուրս եկող ջրի մեջ եղած կարբոլաթթվի միացություններով: Նոր սունկը քայքայում է այդ միացությունները և յուրացնում: Արդյունքը կրկնակի օգուտ է բերում. ջրերը մաքրվում են և հիանալի անասնակեր է ըստացվում: Մասնագետների կարծիքով, նման սնկերի արտադրական աճեցումը 5—10 անգամ կարող է իջեցնել թուղթ արտադրող գործարանների ջրերի մաքրման աշխատանքը: Ներկայումս ուսումնասիրվում են թունավոր և տարբեր տեսակի կեղտաջրերի քանակը պակասեցնելու հնարավորությունները:



## ՕՁԵՐԸ ԲՆԱԿԱՐԱՆ ԵՆ ՓՆՏՐՈՒՄ

*Իտալական Աոստա հովտում այնքան թունավոր օձեր են հայտնվել, որ տեղական իշխանությունները հարկադրված են խայթվածներին առաջին բժշկական օգնություն ցույց տալու համար հարյուր կետ բացել և յուրաքանչյուր ընտանիքի խորհուրդ տալ դեղատնից օձի շիճուկ ձեռք բերելու: Նույնիսկ Հռոմի բնակիչները ստիպված են հատուկ միջոցներ ձեռնարկել թունավոր սողուններից պաշտպանվելու համար:*




*Սկզբում օձերը ծանոթանում են Իտալիայի մայրաքաղաքի կանաչ տարածություններին, իսկ այնուհետև ծառերին բարձրանալով թափանցում են բնակարանները: Օձերի այդպիսի անբնական աճը հասկանալի է. գրեթե բոլորովին վերացել են օձերի բնական թշնամիները՝ ոզնիները ու գիշատիչ թռչունները:*

## ՀԵՌՈՒՍՏԱՏԵՍՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԵՐԵԽԱՆԵՐԸ

Անհամար ինֆորմացիաները խանգարում են բնածին ստեղծագործական ընդունակությունների զարգացմանը: Այդպիսի եզրակացության հանգեցին ճապոնական դպրոցների ղեկավարները: Երեխաներին արած նրանց հարցումները ցույց են տվել, որ հեռուստատեսությունը, գունավոր նկարները և ինֆորմացիայի այլ աղբյուրները խանգարում են երեխաներին իրենց ուշադրությունը կենտրոնացնել դպրոցի աշխատանքներին: Իսկ 38 տոկոս քաղաքի և 47 տոկոս գյուղի երեխաները հեռուստատեսության «շնորհիվ» գրեթե չեն կարդում գրքեր:

## «ՊԻՈՆԵՐԻ» ՓՈՍՏԻՑ

*Սիրելի՛ ընթերցողներ.*

*Ի՞նչ կասեք այս նամակի մասին:*

*Սրա հեղինակը, իր ասելով, 9-րդ դասարանցի է: Հավատա՞լ: Մենք պարտավոր ենք պատասխանել ստացված յուրաքանչյուր նամակի: Սրան նույնպես ուզում ենք պատասխանել և շատ ենք ուզում օգնել հեղինակին, քանի որ նա մեզանից «օգնություն» է խնդրում: Ինչպե՞ս օգնենք, չգիտենք: Գուցե պատասխանը դուք հուշեք մեզ: Ի՞նչ գրենք մենք այս 9-րդ դասարանցուն: Մեր փոխարեն պատասխանեք նրան և ուղարկեք մեզ, խոստանում ենք հրապարակել ամսագրի էջերում:*

«ՊԻՈՆԵՐ»-Ի ԽՄԲԱԳՐՈՒԹՅՈՒՆ



### ԲԱՐԵՎ, ՀԱՐԳԵԼԻ ԽՄԲԱԳՐՈՒԹՅԱՆ ԱՆԴԱՄՆԵՐ

Ձեզ նամակ է գրում մի աղջիկ, որը սովորում է 9-րդ դասարանում: Նոր էի եկել դասից, երբ դուռը ծեծեցին. դուրս եկա մի տղա, ջերմագին բարևեց, հար-

# ՀԱՆԵԼՈՒԿՆԵՐ

ՆԱԶԱՐԵԹ ԿՈՒԶԿՈՒՆՅԱՆ

Հավքի նման թռչում է,
Աչքեր չունի,
Արցունքներով թրջում է:

(Ամպ)

Ոտքեր ունի՝ երկու ակ,
Երկաթե մեջք՝ թամբի տակ:

(Հեծանիվ)

Գետնից եկավ՝ գողուն չէ,
Գալարվում է՝ սողուն չէ:

(Ջրմուղ)

Ծաղկից առավ շինանյութ,
Տուն պատրաստեց ու մտավ:

(Մեղու)

Պոչը՝ ամանիքում,
Բերնը՝ բնանդիքում:

([illegible])

ցրեց եղբորս, ցավոք սրտի նա 10-օր էր ինչ գնացել էր Երևան և չէր վերադարձել: Ճանաչեցի տղային. նա Արտաշներ եղբորս ընկերը: Իմանալով, որ եղբայրըս տանը չի նա հեռացավ, քիչ հետո եկավ մի աղջկա հետ, նրա կինն էր, նոր էին ամուսնացել, ինձ խնդրեց, որ տեղ տամ հանգստանան, ներս հրավիրեց ճաշեցին հանգստացան: Նա ամաչեց մեկ հույր լինեն այդ գիշեր քանի որ տանը տղամարդ չկա: Առաջարկեցի հարևանուհուս մոտ հույր լինի քան, որ տանը տղամարդ կար: Չգիտեմ ինչու հրաժարվեցին և գնացին, ես նրանցը ուղեկցեցի մինչև ճանապարհը, նստեցի մեքենա, բայց չիմանալով թե ուր են գնու: Նրանց գնալուց հետո սիրտս ծանրացավ: Դասերս ինձ համար դարձան անհետաքրքիր: Եվ նույն երեկո գրում եմ նամակ հարգելի խմբագրություն. գրեցեկ տեսնեմ, ես կարամ գտնեմ Անահիտին և Արտաշին: Ես նրանց հասցեն չգիտեմ միայն գիտեմ, որ ապրում են Երևան քաղաքում, իսկ ես ապրում եմ մի գյուղում, որի անունը չեմ նշում: Տվեկ ինձ խորուրդ ինչպես գտնեմ նրանց, խնդրում եմ խորհուրդ տվեք, խընդրում եմ մի մերժեկ: Սպասում եմ անհամբեր: Իսկ եղբայրս վաղուց է ինչ մոռացել էր նրան էլ հասցեն էլ:




Լույս է տեսնում 1928 թվականից

# ՊԻՈՆԵՐ

№ 1 հունվար 1976 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկի առաջին էջը՝*
*ՆԿ. ՍՈՒՐԵՆ ՍՏԵՓԱՆՅԱՆԻ*

Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ., ԽՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԹՈՐՈՍՅԱՆ Ժ., ԽԱՆՋՅԱՆ Գր., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՍԱՐԳՍՅԱՆ Լ. (պատասխանատու քարտուղար), ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղ. խմբագիր), ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս.

«Пионер» на армянском языке. Орган ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375200, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

Հասցեն՝ 375200, Երևան—15, Կարմիր բանակի փողոց, № 15: Հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96

ՎՖ 05973: Պատվեր 2577: Տպաքանակ՝ 76800 : Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 26/XII 1975 թ.:

ՀՍՍՀ Մինիստրների սովետի հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ, Երևան—9, Տերյան փ. № 91:

## ԳՏԵ՛Ք, ԹԵ ԵՐԵԽԱՆԵՐԻՑ ՈՎ, ՈՐ ՁՆԵՄԱՐԴՆ Է ՊԱՏՐԱՍՏԵԼ.





## ԽԱՉԲԱՌ

ՈՒՂՂԱՀԱՅԱՑ — 1. Ֆրանսիացի կոմպոզիտոր: 3. Հրվանդան՝ Բալկանյան թերակղզում: 4. «Լենինի վիշտը» պոեմի հեղինակը: 8. Տարվա եղանակ:

ՀՈՐԻԶՈՆԱԿԱՆ — 2. Չեխոսլովակիայի մայրաքաղաքը: 5. Հերոս քաղաք: 6. Գետ՝ ՍՍՀՄ-ում: 7. Դոնի վտակներից: 9. Ռուս մանկական գրող: 10. Եվրոպայի 1974 թ. լավագույն ֆուտբոլիստը:

*Նկար-առաջարկ ԱՐՏԱՎԱԶԴ ՀՈՎԱԿԻՄՅԱՆԻ*
*Արթիկ, № 9 դպր., 9-րդ դաս.*




| | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|
| 15 | 32 | 9 | 34 | 9 | 21 | 34 |
| 22 | 8 | | 3 | 1 | 22 | 17 |
| | 7 | թ | 11 | 29 | 15 | |
| 1 | 23 | 13 | 1 | 31 | 1 | 22 |
| 36 | 8 | | 22 | 32 | 1 | |
| 2 | 1 | 22 | 1 | 12 | 11 | 22 |

## ԳԱՂՏՆԱԳԻՐ

Գաղտնագրի լուծման բանալին հայկական այբուբենն է: Եթե ճիշտ լուծեք, կկարդաք հայկական ժողովրդական մի ասացվածք:

*Նկար-առաջարկ ՑՈԼԱԿ ՂԱՆԴԻԼՅԱՆԻ*